ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԿԻՑ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԱՏՈՒՆ
(ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ)

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 4 1958

Լ. ՄԵԼԻՔՍԵԹ-ԲԵԿ

# ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԱՑ ՎՐԱՍՏԱՆԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԱՐԽԻՎԻ

*Հայերեն ձեռագրերի հավաքածուն Վրաստանի կենտրոնական պետական պատմական արխիվում (Թբիլիսի), որը հիմնված է Վրաստանում սովետական կարգեր հաստատվելուց անմիջապես հետո (1921 թ. 25/2), ընդգրկում է ընդամենը 50 միավոր, չհաշված, այսպես կոչված, «Նոտարքը»* (Diplomata)[1]*։ Այս ձեռագրերը հավաքվել են տարբեր ժամանակ և տարբեր եղանակով՝ մի մասը Վրաստանի հնությունների պահպանության կոմիտեի կողմից ձեռնարկված միջոցառումների հետևանքով բերվելով Թբիլիսի (մասամբ մեր մասնակցությամբ), մի մասը նվիրաբերությունների ձևով, մի մասն էլ մասնավոր մարդկանցից գնման միջոցով։*

*Ձեռագրերի հավաքածուի գրչագիր գրքերի քանակն է 39, պատառիկների թիվը 10, մեկն էլ հիշատակարան է՝ կցված 1685 թ. Վենետիկում տպագրված ավետարանին։*

*Ըստ բովանդակության ձեռագրերի մեծ մասը, այսինքն 8-ը, Ավետարան է՝ №№ 2/541*[2]*, 3/542, 5/544, 6/545, 7/546, 23/558բ, 24/558գ, 29/584, Հայսմավուրք 2՝ №№ 1/540, 17/556, Ճառընտիր 1՝ № 22/558ա, Մաշտոց 2՝ №№ 4/543, 12/551, Տաղարան-Գանձարան 3՝ №№ 33/590, 37/634, 44/675, Հմայիլ 5՝ №№ 15/554, 18/557ա, 19/557բ, 20/557գ, 21/557դ, Հայ-վրացերեն բառարան ըստ Մխիթար Սեբաստացու Քերականության ցանկի 3՝ №№ 34/622, 35/627, 40/639, Պարզատումար-Ուրբաթագիրք 2՝ №№ 8/547, 16/555, Տոնացույց 1՝ № 45/676, Հեքիմարան-բժշկարան 1՝ № 13/552, Խորհրդատետր պատարագի կամ Պատարագամատույց 1՝ № 9/548, Աղոթամատույց 1՝ № 48/700, Շարականոց 1՝ № 38/635, «Գավազանագիրք» Գևորգ Մելքիսեդեկյան Խուլյի 1՝ № 50/705, Աղեքսանդր Մակեդոնացու պատմությունը 1՝ № 28/583, Ժողովածու 2՝ №№ 36/633, 47/678, Քարոզգիրք 1՝ № 42/641, հայ և վրաց կաթոլիկների այլևայլ մատյաններ 6՝ №№ 30/587, 31/588, 32/589, 39/636, 41/640, 43/642, «Թուրքերեն սազ հայ աշուղները» Գ. Թարվերդյանի 1՝ № 50/715։*

---

1 *Սրանք են 300-ի չափ կաթողիկոսական կոնդակներ և այլ վավերագրեր, որոնք առանձին են հաշվառված. Տե՛ս* Центральный государственный исторический архив. Путеводитель. Под редакцией А. Иовидзе. Тбилиси, 1947, стр. 53 *(կազմված մասամբ մեր մասնակցությամբ)։*

2 *Առաջին թվահամարը մեր ցուցակով ձեռագրին տված համարն է, իսկ 2-րդը՝ Արխիվի մայր մատյանում ձեռագրին տված համարը։*

Ժամանակագրական կարգով ձեռագրերը դասավորված են այսպես. մեկը՝ 10—11-րդ դդ. (№ 14/553), մնացածները սկսած 14-րդ դարից, այն է՝ 1328 թ. (№ 29/584), 1471 թ. (№ 2/541), 1474 թ. (№ 5/544), 1481 թ. (№ 11/550), 1485 թ. (№ 7/546), 14—15-րդ դդ. (№ 23/558բ), 1503 թ. (№ 25/558գ), 1510 թ. (№ 12/551), 1511 թ. (№ 6/545), 1606 թ. (№ 28/583), 1698 թ. (№ 33/590), 16—17-րդ դդ. (№ 16/555), 17-րդ դ. (№ 8/547, 9/548), 1714 թ. (№ 10/549), 1749 թ. (№ 41/640), սկսած 1761 թ. և շարունակությունը (№ 30/587), 1762 թ. (№ 30/587), 1768 թ. (№ 43/642), 1774 թ. (№ 18/557ա), 1790 թ. (№ 48/700), 1771 թ. (№ 1/540), 18-րդ դ. (№№ 19/557բ, 20/557գ, 21/557դ, 22/558ա, 27/582, 31/588, 35/627, 37/634, 39/636, 40/639, 46/677), 1814 թ. (№ 49/705), 1840 թ. (№№ 38/635, 74/678), 1847 թ. (№ 26/581), 19-րդ դ. (№ 34/622), 20-րդ դ. (№ 50/715)։

Ըստ նյութի մագաղաթի ձեռագրեր են երեքը՝ № 5/544, 14/553, 29/584, մնացածը կամ հին թուղթ է, կամ նոր թուղթ, երբեմն նույնիսկ կապույտ։ Ձեռագրերի մեծ մասը վնասված է կամ հասել է մեզ թերի, երբեմն վերջը պակաս, երբեմն և՛ սկիզբը և՛ վերջը պակաս։

Ձեռագրերի գրիչներն անունով հայտնի՝ Մկրտիչ քահանա 1328 թ. (№ 29/584), Խաչատուր երեց 1481 թ. (№ 11/55), Խաչատուր աբեղա 1485 թ. (№ 7/546), Աղաբեկ Թուրենյան 1503 թ. (№ 25/558դ.), Հոհաննես 1511 թ. (№ 6/545), Ավետիք 1698 թ. (№ 33/590), Կիրակոս 1714 թ. (№ 10/549), Վարդան դպիր 1749 թ. (№ 41/640), Տիրան 1768 թ. (№ 43/642), Պողոս քահանա 1771 թ. (№ 1/540), Մոսես 18-րդ դ. (№ 46/677), Գեորգ Խուբով 1814 թ. (№ 49/705), մնացածը անհայտ։

Ձեռագրերի գրության տեղերն են՝ Հավուց թառ (№ 2/541), Կյուրեղի վանք (№ 5/544), Ս. Մաշտոց «մերձ առ դեղաքաղաքիս Սոթայ» (№ 6/545), Սանահին (№ 7/546), Կարինի մոտ (№ 8/547), Ճիխեվ գյուղ (№ 11/550), Յարամիշի-Յարբիկ (№ 12/551), Նորավանք (№ 25/558դ), Լիմ անապատ (№ 26/581), Կիլիկիա-Դուգուշ (№ 29/584), Ախալցիխե (№№ 30/587, 32/589), Ուռէ—Ախալցիխեի մոտ (№ 43/622), Կ. Պոլիս — Պեկօղլու թաղ (№ 41/640), Ս. Կարապետ Կեսարու (№ 43/642), Շուշի (№ 47/678), Ն. Նախիջևան (№ 48/700), Մոզդոկ — Ղզլար (№ 49/705)։

Ցուցակագրված ձեռագրերից առնվազն տասը վրացական միջավայրի դրոշմն են կրում, ունենալով հիշատակարաններ կամ հիշատակագրություններ վրացերեն լեզվով՝ սովորաբար այսպես կոչված «մխեդրուլի» (այսինքն «զինվորական» կամ քաղաքացիական) գրով, ինչպես, օրինակ, №№ 7/546, 16/555, 30/587, 34/622, 35/627, 36/633, 37/634, 40/639, 41/640, իսկ մեկը նույնիսկ «խուցուրի» (այսինքն «եկեղեցական»)՝ № 11/550։

Ձեռագրերի հիշատակարանները և հիշատակագրությունները, որ մենք ընդօրինակել ենք ըստ կարելվույն ամբողջապես, հետաքրքիր են ոչ միայն ըստ բովանդակության, քանի որ պարունակում են արժեքավոր տվյալներ այլևայլ պատմական անցքերի, դեպքերի և դեմքերի մասին, այլև լեզվական առանձնահատկություններով, որոնք ուշ միջնադարի հայոց կենդանի բարբառների ազդեցության կնիքն են կրում։ Տեղ-տեղ հիշատակագրությունները չափածո են (№№ 6/545, 28/583, 34/622, 43/642, 49/705)։

№ 1 [= 540]

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Թերթեր՝ *643։* Պրակները՝ *54 (վերջին ծզ թերի), յուրաքանչյուրը սովորաբար 12 թերթ, երբեմն 8(ա), 10 (ժա, իգ), 11 (բ), 14 (իե), 3 (ծզ՝ թերի)։* Մեծությունը՝ *43×28×9 (գրությունը 31,5×18,5)։* Նյութը՝ *հին թուղթ։* Կազմը՝ *կաշեպատ տախտակ (կապած)։* Ձեռագրի վիճակը՝ *մի փոքր քայքայված, մանավանդ սկզբից և վերջից. վնասված են 55ա, 103, 267, 460, 585։* Գրությունը՝ *երկսյուն։* Տողերը՝ *37։* Գիրը՝ *խոշոր բոլորագիր։* Զարդագրություն՝ *վերնագրերը և սկզբնատառերը կարմիր։* Գրիչը՝ *Պօղոս քահանա։* Գրության տեղը՝ *անհայտ։* Գրության ժամանակը՝ *մինչ 1771 թ. (ՌՄԻ)*։ Պատվիրատուն *(ստացողը)՝ Խոջա Ալավերդի և որդիք՝ Հրմզ, Շահին են։*

*Բովանդակությունը*

*Հայսմավուրք սովորական բովանդակությամբ, սկսած Նավասարդ Զ— Օգոստոսի ԺԶ-ից մինչև Նավասարդ-Օգոստոս, որի վերջում «անէկաց»-ն է, Օգոստոս Ժ-ի ներքո տրված է Բարաղամի վարքաբանությունը (մինչև վերջը, որը թերի է)՝ «Պատմութիւն Յովասափու և Բարղամա վարդապետին» (էջ 603բ$_1$—643բ$_2$ թերի)։*

*Հիշատակարան (էջ 108ա$_1$, 111ա$_2$, 117ա$_2$, 120բ$_2$, 125ա$_2$, 155ա$_1$, 169ա$_2$, 194բ$_2$, 199բ$_2$, 224ա$_2$, 239ա$_2$, 245ա$_2$, 263ա$_2$, 266ա$_2$, 283բ$_2$, 382ա$_2$, 402բ$_2$, 460ա$_2$, և այլուր)։*

*...տէր Յիսուս Քրիստոս, ողորմեա ազգիս հայոց և զմեղապարտ գծող Պօղոս քահանայիս, եւ տուեալ ստացող տառիս խօջայ Ալավէրտի և որդւոյն Հրմզին, Շահինին և ամենայն...* տէր Ղուկասին և ծնօղացն և որդւոցն և կնոջն և եղբօրն և ամենայն արեան մերձաւորաց, կար[դացաց և լսողաց]...[1]։

*էջ 29ա$_1$(=69ա$_2$)*

*...շնորհօք և ընդրութեամբն քո, աստուածածնին, ողորմեա մեղուցեալ Պօղոս քահանայիս և զծնողս իմ, եւ տուեալ ստացող տառիս խօջայ Ահլավէրտին և որդոց Հրմզին, Շահենին,* տէր Ղուկասին *և* կնոջն Նարկուհաշ[ին] և հօրն Անտրիասին և Անախարունին և որդւոցն և դստերացն և տէր Թորոսին, որ գրեաց, և ամենայն ար[եան մերձաւորաց]...[2]։

*էջ 4բ$_{1-2}$—5ա$_{1-2}$, էջ 6ա$_2$*

*...Արդարադատն աստուած, որ տա կարողութիւն աւարտեալ գրոյս... ի ՌՄԻ [=1771]։*

*էջ 23ա$_{1-2}$—24ա$_1$*

*Տէր աստուած Յիսուս Քրիստոս, լոյս տուր, տէր, աչաց իմոց ի հասանել աւարտ գրոցս։*

*էջ 321ա*

*ողորմեա, Քրիստոս աստուած, ստացող տառիս մահդասի Հրմզին, Շահանէ և որդոյն խօջայ Ահլավէրտէ և* տէր Ղուկասին և կնոջն Նարկուհուշին և հօրն Անտրիասին...[3]։

---

[1] ...-ածվածը ավելացված է այլ ձեռքով։

[2] Նույն,

[3] Նույնը։

էջ 447ա$_1$(=456բ$_2$)

ողորմեա ըստացողի տառիս խօջայ Մուրատին և մահտեսի Հըրմըզին, Շատանէ և ամ ար[եանց մերձաւորաց]...

էջ 460ա$_2$

զմեզոք մածեալ և Պօղոս էրեց գրչակս, եւ առաւել խօջայ Ալաւերտի և որդին իւր Հըրմզն, Շային և տէր Ղուկաս և կնոջ...

էջ 489բ$_2$

...յորոց փորձանաց փրկեսցէ զմեզ տէր աստուած մեր և ամենայն քրիստոնեայքս, մանաւանդ մահդասի Հըրմըզին և կողակցին Շատանէ և որդոյն խօջայ Ալաւերտէ:

Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն ն ե ր

էջ 10ա$_2$, 13բ$_2$, և այլուր՝ յուրաքանչյուր վարքագրության վերջում, նաև 524ա, 545բ, 549բ, 550բ, 558ա, 560բ, 562ա, 571բ, 572բ, 581ա, 582ա, 584բ, 593ա, 599բ, 602բ, 608ա, 609ա, 619ա էջերի լուսանցքներում ներքևից, ջնջված հիշատակարանի փոխարեն ունի

Պարոն Վարդանին, կողակից Վարդխաթունին և ծնողացն՝ Այվազին, Սառախաթունին, մյուս Վարդխաթունին, եղբարցն Առաքելին, Անդոնին, հանգուցեալ Բարսեղին և ամենայն արեան մերձ[աւորաց, կարդացողաց և լսողաց զողորմի]...

էջ 1բ$_2$

Օվ էս գիրս կարդայ, մէկ բէրան Հէրապետին ողորմի տայ և յիրայցին: Ես, Սարգիս, գրեցի. օվ էտին յիշայ, աստուած յիւրան...

էջ 5բ$_{1-2}$

ԻԵ, թվ ի ՌՄԺԵ [=1766] յելաւ Յարութիւն ի մօրէն, ի ՌՄԵ [=1756] յելաւ Փիլիպոս ի մօրէն, ի ՌՄԻԳ [=1773] յելաւ Յօվանէս էշն (՞) ի մօրէն:

էջ 266բ

Թ. շի ՌճՀԲ [=1723] յուլիս ամսի [1] ի ԺԸ օր գրեցար հարխահատալէն (՞), որ էրէյ Էրէվան առաւ Դ ամսի[1] Կոխարարբարն (՞) առաւ շատ բար ու մարդիկն մեռան, շատ ավեր, աւեր, արար թիւն է ու թէ իմանաք ըստ թվին Ռ[ճ]Հ Բ-ն [=1723] սուրբ Սարգսին գրեցի Վարթուկ ի Գուզալփարա թվին ՌՄՀ-ի [=1821] (՞) տէր Սարգսի օ[ր]հնեալ ՌճՀԹ [=1730]:

էջ 267ա

Ի վայելումն տիրացու Մ...

№ 2 [=541]

ԱՒԵՏԱՐԱՆ

**Թերթեր**՝ 339 (1—2 պակաս): **Պրակներ**՝ 28$^1/_2$, յուրաքանչյուրը 12 թերթ: **Մեծություն**՝ 18,5×14×5,5 (գրության 15×10): **Նյութը**՝ հին թուղթ: **Կազմը**

[1] Ձեռագրում՝ աս մի:

*կաշեպատ տախտակ։ Դրսից ականակուռ երկաթե խաչով զարդարված (5 կետից 2 հանված, 3-ը լալի գույն)։ Կցված ունի մագաղաթյա պատառիկ 2 թերթ։* Ձեռագրի վիճակը՝ *մասամբ այրված (վերին մասում)։* Գրությունը՝ *երկսյուն։* Տողերը՝ *16—18։* Գիրը՝ *խոշոր բոլորագիր։* Զարդագրությունը՝ *զարդանկար 109բ էջում, կիսախորաններ, զարդագրեր, 151ա էջում ութածայր խաչ, վերնագրերը և սկզբնատառերը կարմիր։* Գրիչը՝ *անհայտ։* Գրության տեղը՝ *Հավուց թառ։* Գրության ժամանակը՝ *1471 թ. (ՋԻ)։* Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ։* Բովանդակությունը՝ *չորս ավետարաններ (Մատթեոս 3ա—109ա, Մարկոս 110ա—166ա, Ղուկաս 167ա—263ա, Հովհաննես 264ա—339ա)։*

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն*

*էջ 237ա—բ*

*Ի թվականութեան Հայկազեան տումարի ՋԻ թուի [=1471] և ի վիշտաշատ ժամանակի, յորում նեղեալք յանաւրինաց և յանիրաւ պահանջողաց, որ և ազգս մեր հայոց տառապեալ էին և կեղէին, ի գերահռչակ սուրբ ուխտս Հայոց թառս, ընդ հովանեաւ սուրբ Ամենափրկչիս, որ է պատկեր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։*

*Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն ն ե ր*

*էջ 11ա*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զխօջայ Թասալն և կողակիցն Անամն և զորդին Պետրոսն և զդուստրն Ասլխանն, յիշեցէք և աստուած ողորմի ասացէք. և որք յիշեն, յիշեալ լիցին ի Քրիստոսէ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։*

*էջ 109ա*

*Յիշատակ է սուրբ աւետարան խօջայ Թասալն և կողակիցն Անամն և զորդին Պետրոսն և զդուստրն Ասլխանն. ամէն։*

*էջ 160բ*

*Զմեղապարտ նկարաւղս և զանարժան Ստեփանոս մահդասի արժանի արարէք յիշման, աղ[ա]չ[եմ]։*

*էջ 164բ—165ա (ներքևի լուսանցքներում)*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զխօջայ Թասալին և կողակիցն Անամն և որդին Պետրոսն և զդուստրն Ասլխանն. յիշեցէք և աստուած ողորմի ասացէք։*

*էջ 166ա*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս և աստուած ողորմի ասացէք ընէս Փարխաւին, հօրն Ղուլիջանին, մօրն Հանբէկումն, կողակից Բէկումն, որդոցն Սահակին, Կիրակոսին, Յակոբին, դստերացն Էթարին, Հանբէկումն, Շահնիգարին, եղբարցն Մուրադին, կողակիցն Էթարին, որդոցն Աստուածատուրին, Միր Մարգարիտին, ...Մարիամին..., եղբարցն Խլղաթին... Նարխանին, որդոցն Մարտիրոսին, Յովհաննէսին, դստերացն Էթարին, Սառին, Մըրւաթին, Դիլաքին Նաւասարդին, քեռց Բէկումն, Աղաբէկումն, Խաժուկին, Փաշաբէկումն, մեծ պապուն և մեծ մամուն Թաթոսին, Նաւասարդին, Մահրուբին, կողակիցն Շամլուին, որդոցն Մարտիրոսին, իմ փէսայ Սիմոնոսին, կողակիցն Բէկումն, դստերն Յամանփաշին, Թուրանդին, իմ անէր Աթազանին. ամէն։*

*էջ 237ա (թերի)*

*Եւ ի... Ուզուն Հաս[ան...] որդւոյ Ա... բէկին շն (՟) միջավոր էրեկ և է խորհս... Թաւրիզ, ի փաթշահու[թեան] և Եսպան զխ... զՋահաշէն զորդին զԹաւուսին։*

*էջ 260բ—261ա (ներքևի լուսանցքներում)*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զխօջայ Թասալին և կողակիցն Անամն և որդին Պետրոսն և յիշեցէք և աստուած ողորմի ասացէք զուստրն Ասլխանին։*

*էջ 336ա*

*Մայրն իմ Եմինխաթուն և քոյր իմ Սուլթանմելիք վերայձայնելոյ առ Տէր։*

№ 3 [=542]

## ԱՒԵՏԱՐԱՆ

Թերթեր՝ *90*։ Պրակներ՝ *20, յուրաքանչյուրը 12 թերթ, պահպանված է ժզ—ից (ա—ժբ պակաս)*։ Մեծություն՝ *25×17,5×2 (գրության 19,5×12)*։ Նյութը՝ *թուղթ*։ Կազմը՝ *ստվարաթուղթ*։ Ձեռագրի վիճակը՝ *թերի (սկզբից), եղածը լավ վիճակում*։ Գրությունը՝ *երկսյուն*։ Տողերը՝ *21*։ Գիրը՝ *խոշոր բոլորագիր*։ Զարդագրություն՝ *զարդանկարներ լուսանցքներում, թռչնագրեր, վերնագրերը և սկզբնատառերը կարմիր*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *անորոշ*։ Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ*։ Բովանդակությունը՝ *ավետարաններ ըստ Ղուկասու (սկզբից թերի) և Հովհաննու*։

*Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն (թերի)*

*էջ 90բ*

*...և մեր ննջեցելոց և եղբայր իմ տէր Էրեմիայն և հայրն իմ Եղիայն և մայրն իմ Մարիամն և որդին իմ Ղուկասն, որ հանգուցեալ են առ Քրիստոս, և աստուած իւրեանց հոգոյն ողորմի. ամէն։ Դարձեալ յիշեցէք [ի] Քրիստոս Անանիայն և կողակիցն Խասին, որ հանգուցեալ է առ Քրիստոս. ամէն։*

*Դարձեալ յիշեցէք... սարգաւագն և առաքեալն։*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս Անանիան և կենդանի կողակիցն Եզգի խասն և իւր հա[ր]սն Թամամն, և իւր նոր և հին ննջեցելոցն աստուած ողորմի, ամէն, ամէն։*

№ 4 [=543]

## ՄԱՇՏՈՑ

Թերթեր՝ *105*։ Պրակներ՝ *12, յուրաքանչյուրում 12 թերթ (երբեմն պակաս), իրար մեջ խառնված*։ Մեծություն՝ *16×12,5×3 (գրության 13×8,5)*։ Նյութը՝ *հին թուղթ*։ Կազմը՝ *նոր*։ Ձեռագրի վիճակը՝ *լավ*։ Գրությունը՝ *միասյուն*։ Տողերը՝ *տարբեր, 17, 18, 21*։ Գիրը՝ *բոլորագիր (այլ և այլ ձեռքով)*։ Զարդագրություն՝ *վերնագրերը և սկզբնատառերը կարմիր*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *անորոշ*։ Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ (Մանուել վարդապե՞տ)*։ Բովանդակություն՝ *Կանոն խաչ արհնելոյ. Կանոն պղծեալ տաճարի. Կանոն մկրտութիւն անելոյ. Կանոն հաղորդ տալոյ. Կանոն թաղման մեծի. Կանոն այգույ աշխարհականի (~ ականի). Կանոն*

տղաթաղի. Վասն այգուց տղայի. Վասն ողջհանգիստ առնելոյ. Վասն փոքր աղաւրհնելոյ. Վասն տեառնականի. Վասն սերմ և հնձան աւրհնելոյ. Վասն ջուր օրհնելոյ. Վասն ոտնալուայ և կարգ. Վասն զանձի ննջեցելոյ Մանուէլ վարդապետէ։

№ 5 [=544]

ԱՒԵՏԱՐԱՆ

**Թերթեր՝** *266*։ **Պրակներ՝** *յուրաքանչյուրում 11—13 թերթ*։ **Մեծություն՝** *24×17×6 (գրության 16×11)*։ **Նյութը՝** *մագաղաթ*։ **Կազմը՝** *նոր*։ **Ձեռագրի վիճակը՝** *սկիզբը թերի, եղածը լավ պահպանված*։ **Գրությունը՝** *երկսյուն*։ **Տողերը՝** *21*։ **Գիրը՝** *բոլորագիր*։ **Զարդագրություն՝** *զարդանկարներ, խորաններ, զարդանկարներ լուսանցքներում, վերնագրերը և սկզբնատառերը կարմիր*։ **Գրիչը՝** *անհայտ*։ **Գրության տեղը՝** *Կյուրեղի վանք*։ **Գրության ժամանակը՝** *1474 թ. (ՋԻԳ)*։ **Պատվիրատու** *(ստացողը)՝ Սահակ երեց Խառնավիլու*։ **Բովանդակությունը՝** *ավետարաններ ըստ Մատթեոսի, 1—45ա, Մարկոսի, 46ա—103բ, Ղուկասու 104ա—թերի, Յովհաննու չկա*։

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն*

*էջ 264ա—266բ*

*Արդ գրեցաւ սա ի թուականութեան հայոց Ջ և ԻԳ-ն [=1474] ի վանքս, որ կոչի Կիւրղի, ի յառաջնորդութեան տէր Ստեփանոսի և Կարապետ վարդապետի, ընդ հով[անեաւ սուրբ] նշանա[ց տա]ճարացս՝ սուրբ Աստուածածնիս և սուրբ Լուսաւորչիս և սուրբ Յոհան[ն]ու աւետարանչին, զոր տէր աստուած պահեսցէ զեկեղեցի իւր սուրբ մինչև եկեսցէ այն, որ իւրն է հանդերձեալն։ Այլ և առաջնորդացն և կրաւնաւորացն առհասարակ վարձս բարեաց պարգևեսցէ ամենեցուն և մեզ և մեր ծնաւղացն և ձեզ յիշողացդ թողութիւն շնորհեսցէ յիւր միւսանգամ գալստեանն, ամէն, և որ զամէն ասէ, ամէն։ Արդ... նոր ասի և որք հանդիպիք այս սուրբ և աւետաբարոզ աւետարանիս, կամ կարդալով և կամ աւրինակ գնելով, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զփծուն գրչակս և սխալանաց և անհաւասարութեան գրոյս մի մեղադրէք, զի կար մեր այս չափ էր. զի եթէ դուք զմերն ոչ յիշէք և աստուած զձերն ոչ յիշէ։*

*Ես, Սահակ երէցս Խուռնաւիլու, որ փափաքեցա այս սուրբ և աւետաբարոզ... աւ[ետարանիս] || թէ... յիշատակ ի... ընդանեաց յԵրուսաղէմ և գրել տուի զսուրբ աւետարանս յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց և զաւակաց և ամենայն արեան մերձաւորաց, ի հալալ արդեանց իմոց, և եղի յիշատակ ի Վաւորին ժամատեղն, ի դուռն սուրբ առաքելոցն. ով որ իշխանութիւն չունի, զաւետարանս (ըն. զօետարանս) հանել ի ժամատեղացս, ծախելով կամ գրավելով, այլ մանաւանդ... առնելով..., զպատիժն Յուդայի և զխաչահանացն առցէ և զԿայենի ի յափտենից տանջանքըն։ Եւ խնամով պահաւղքն աւրհնին յաստուծոյ և սուրբ առաքելոցն և յամենայն սրբոց. ամէն։*

*Հ ի շ ա տ ա կ ա գ ր ո ւ թ յ ո ւ ն*

*էջ 265ա—266բ*

*[Վեր]ջին ստացողն աստուածազարդ աւետարանիս, զհեզահոգի և զբարեմիտ տէր Դաւիթ կրաւնաւորն և զհոգեղբայրն իւր Զաւհրապն, որ միաբանե-*

ցան և ազատեցին զսուրբ աւետարանս ի ձեռաց ան[աւ]րինաց և ընծայեցին զսա Անանիա սուրբ առաքելոյն և ծիրանաւոր սուրբ աստուածածնին, յիշատակ... և ծնաւղաց իւրեանց, տէր Դաւթի ծնաւղացն՝ հաւրն Սարգսին և մաւրն Շահ/սա..., Գրիգորին, եղբ[աւ]րորդյն Դաւիթ սարկաւագին և Կիրակոսին, քուերացն Ղլլարիս և Գուլազիս, Ջաւհառի ծնաւղացն՝ հաւրն Աղազին և մաւրն Ուզաւրի-Սուլթանին, և իւր կողակցին Ուլուխաթունին, հանկանն Մասում-փաշին, միւս հանկանն Սարահ-մէլիքին և եղբարցն իւր Պետրոսին և Հարմուզին, հաւրեղբարցն Թաթոսին և Ղուլաթին, որդոց նոցին... || կե[նդանեա]ցն և ննջեցելոցն. և որք կարդայք և աւրինակէք, յիշեցէք և աստուած ողորմի ասացէք նոցա, և աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ և նոցա առհասարակ ողորմեսցի յիւր միւսանգամ գալստեանն. ամէն:

Ընդ նոսին և ինձ մեղապարտ և անիմաստ Վարագեցի Յովաննիսիս աստուած ողորմի ասացէք և ծնաւղացն իմոց Մկ/րտչին... մեղս աստուած ձեռամբ իմով, ՌԾԲ [=1603] թվականի, ի դուռն սուրբ երկոտասան (երկուեսուն՞). յիշեցէք և աստուած ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի աստ և հանդերձեալն. ամէն:

№ 6 [=545]

ԱՒԵՏԱՐԱՆ

Թերթեր՝ 298 (սկզբից 5 էջ մաքուր)։ Պրակներ՝ 23, յուրաքանչյուրը 12 կամ 16 թերթ։ Մեծությունը՝ 18,5×13,5×5 (գրության 19×9)։ Նյութը՝ հին թուղթ։ Կազմը՝ կաշեպատ տախտակ, դրսից արծաթապատ, ականակուռ խաչով զարդարված (9 կետից՝ 9 ակնով)։ Ձեռագրի վիճակը՝ ընդհանրապես բավարար, տեղ-տեղ վնասված։ Գրությունը՝ երկսյուն։ Տողերը՝ 19։ Գիրը՝ բոլորագիր։ Զարդագրությունը՝ զարդանկարներ, խորաններ, զարդագրեր լուսանցքներում. առաջին տողերը կարմիր, թռչնագրեր։ Գրիչը՝ Հոհաննես։ Գրության տեղը՝ «Ընդ հովանեաւ սուրբ Մաշտոցիս»... «մերձ առ գեղաքաղաքիս Սոթայ»։ Գրության ժամանակը՝ 1511 թ. (ՋԿ)։ Պատվիրատուն (ստացողը)՝ Մանվել քահանա։

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն

էջ 295բ$_1$—297ա$_2$ (երկսյուն)

...[Տ]նօրհիւ տեառն սկսայ և խնամաւք նորին կատարեցի եռափափաք սիրով, հոգով և մարմնով և մտաւք զլուսափառ և զմաքրափայլ աւետարանս, գրեցի մերձ առ գեղաքաղաքիս Սոթայ ընդ (ըն. ընթ) հո/վանեաւ սուրբ Մաշտոցիս և այլ ամենայն սուրբ եկեղեցեաւս, ի հայրապետութեան տեառն Ըռստակիսի, ի յաթոռ սուրբ Գանձասարայ, ի թագաւորութեան թախտիս Դայավրեժոյ սուլտան Շահ-Իսմայելայ, որ թագաւոր խաղ[աղ]արար, ի թվականիս հայկազ[ե]ան սեռի ՋԿ [=1511] և հոռոմոց ապրիլ ԻԹ, հայոց արաց ԺԷ: Որ ցանկացող եղև այսմ բազմագրով գաղափարի, որ գեղեցկայար||մար զրուատով անէր յինքեան զամենայն արուեստ դպրութեան: Ես, մեղուցեալ անձն Յովհաննէսս, գրեցի զսուրբ աւետարանս ի խնդրո բազմահաւատ քահանայիս Մանուէլի և ամուսնոյն իւրոյ արքահաւատ կնոջ Արափշի՝ յիշատակ իւրեանց և ծնողացն և որդոց իւրեանց Երեմայ սարկաւագին և Եղիային և դստերն Սանեթին/ և մէկ այլ որդոյն Յովանիսին և Միրին: Աստուած վայելել տացէ մինչև ի խորին ծե-

րութեան և յետ ատենացս ելանելոյ առիթ փրկութեան լինի հոգոց սոցա. [ա]մէն:

Դարձեալ կրկին անգամ աղաչեմք յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոյգրեալքս ի սմա յաւրինակով կամ գաղափարելով կամ մէկ անգամ հայելով և աստուած զձեզ յիշէ [յ]իւր արքայութեան. ամէն: ||

Դարձեալ կրկին զսուրբ հանդիպողքդ այս աստուածաշունչ սուրբ աւետարանիս յիշեցէք զտառապեալ Յովհաննէսս, ծնողքն իմ, զի էի Կ[=60] ամեա ա[ւե]լի քան թէ պակաս, մի մեղադրէք, զի կար մեր այս էր, ի խնդրոյ այս Մանուէլ քահանայիս զտկարութիւն անձին իմոյ ի բաց թողեալ՝ սկսեալ աւարտեցի ի Լ աւուրն. թէ յիշէք ուղիղ սրտիւ, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ. ամէն:/

Այլ և ա[ւր]հ[ն]եսցէ Քրիստոս աստուած զՄանուէլ քահանայս և ամուսինն իւր հոգով և մարմնով, տամբ և տեղօք, զարմաւք և զաւակաւք և ամենայն գոյիւք, ամէն:

Այլ և աւրհնութիւն ամենայն երկնային զաւրացն, յԱթոռոցն, Սերովբէիցն և Քերովբէիցն և ամենայն Թ· դաս հրեշտակացն և հրեշտակապետացն եկեսցէ և հանգիցէ ի վերայ Մանուէլ քահանային եւ իւր տանն: Այլ և աւրհնեսցէ Քրիստոս աստուած յամենայն առաքելոց և մարգարէ||ից և երջանիկ բարունապետաց և ուղղափառ վարդապետաց և հայրապետաց և ճգնաւորաց և ամենայն մարտիրոսական դասուցն եկեսցէ ի վերայ Մանուէլ քահանային և ամուսնոյն և իւր տանն: Այլ և աւրհնեսցէ Քրիստոս աստուած զհայրն որդովք և զմայրն դստերաւք. ամէն: Այլ և տացէ տէր աստուած սորա շինութիւն, յանդորրութիւն, խաղաղութիւն: Այլ և աւրհնեսցէ Քրիստոս աստուած զցանածն և զցանելոյն, զտնկածն և զտնկելոյն, զյղին և զծնանելոյն, այն աւրհնութեամբն աւրհնէ, որ ոչ անցանէ, ամէն:

Ձեռքս փտի և հողանայ,
Գաղափս փոշի-մոխիր դառնայ,
Գիրս յիշատակ առ ձեզ մնայ:
Թէպէտ խոշոր է գիր սորայ,
Այլ դիւրընթաց, ով գիտենայ,
Ով որ զայս գիրս կարդա,
Աստուած աւրհնէ զիս և զնա.ամէն:

Ջաւհարն անգին է սառաֆին
Եւ անպիտան է տգիտին.
Ով գիտէ զգին ջաւհարին,
Նայ հաւասար է ընդ նմին:

*Հ ի շ ա տ ա կ ա գ ր ո ւ թ յ ո ւ ն ն ե ր*

*էջ 8ր (միասյուն)*

Ես չեմ արժան և մեղապարտ Աստուածատուր քահանայս տեսի զսուրբ աւետարանս ի ձեռն գերութեան տաճկաց, հառաչման և փափակ սրտիւ առի զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իմոյ և ծնաւղացն և մերձաւորացն իմոց և ամուսնին իմ Բիբին և որդիքն իմ տէր Յոհաննիսին և կողակիցն իւր Խանումին, Փիրիպէկին, Աւտալին:

*Դարձեալ աղաչեմ զձեզ, ով սուրբ քահանայք, որ հանդիպիք զսուրբ աւետարանիս, յիշեցէք և զԹուման իմ՝ տէր Աստուածատուրին և կողակից իւր պարոն Խանումին և դուստր Խանզատին։ Յիշեցէք զտէր Աստուածատուր քահանայն և զիւր ծնաւղսն. և Քրիստոս, որ տատ է ի տուրս բարեաց, ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս առ հասարակեաց ողորմեսցի*[1]. *ամէն։*

*Էջ 297բ—298ա (միասյուն)*

*...Արդ որք հանդիպիք սուրբ աւետարանիս, յիշեցէք զստացող սուրբ աւետարանիս զտէր Աստուածատուրն և զկողակիցն իւր* պարոն Խանումն[2] *և զծնաւղսն իւր՝* Մէլիքզար[3] *և զորդիքն իւրոց, որ ետուր վերստին նորոգել և ծաղկել զսուրբ աւետարանս ի հալալ և յարդար վաստակոց իւրոց, ի վայելումն անձին իւրոյ և զաւակաց իւրոց. յիշեցէք և աստուած ողորմի ասացէք նոցա հոգոյն. ամէն։*

*Այլ և աւրհնեսցէ տէր աստուած մեր զԱստուածատուր քահանայն և զկողակիցն իւր և զորդիքն իւրոց հոգով և մարմնով, տամբ և անդաւք, զարմաւք և զաւակաւք, ընչիւք և ապրանաւք, սիրելաւք և բարեկամաւք և ամենայն գոյականաւք. աստուած տայ ձեզ անչափ բարի, որպէս և ձեր սիրտդ կամի և յետ աստեացս ամենայնի՝ արքայութեան լինիք որդի. ամէն։ Այլ և տացէ տէր աստուած տանս ձերոց շինութիւն, անդորրութիւն, խաղաղութիւն, բարեաց լիութիւն և առատութիւն. և աւրհնեսցէ Քրիստոս աստուած զգանածն և զգանելոյն, զանկածն և զանկելոյն, զյղին և զծնանելոյն, և պահեսցէ անփորձ անսասան մինչև ի խորին ծերութիւն, և տացէ տէր աստուած դարձ և ապաշխարութիւն. ամէն։*

*Արդ կազմեցաւ և ծաղկեցաւ ձեռամբ Յովանէս վարպետի ի Թվիս հայոց ՌՀԶ[=1627] ի դուռն Հաղարծնու սուրբ Աստուածածնիս և սուրբ Գրիգորիս և այլ սրբութեանցս, որ աստ կան հաւաքեալ. աղաչեմ զձեզ մի բերան ողորմոյ արժանի արարէք զիս և ծնաւղսն իմ և զԳուրխանայ ապաշխարողն, որ աշխատեցաւ ի կազմել զսուրբ աւետարանիս, աստուած ողորմի ասացէք հոգոյ նորա. ամէն. և որ ողորմի ասէ, աստուած իւր հոգոյն ողորմի. ամէն։*

*Աստուած ողորմի Մանգասարին և իւր կողակցուն, որ զսուրբ աւետարանս ի գերութենէն ազատեցին։*

## № 7 [=546]

## ԱՒԵՏԱՐԱՆ

Թերթերը՝ *236։* Պրակները՝ *19, յուրաքանչյուրը 12 թերթ (առաջին պրակը 10 թերթ, որոնցից 2 մագաղաթ)։* Մեծությունը՝ *21×16×6 (գրության 15×11)։* Նյութը՝ *հին թուղթ (առաջին պրակում 2 թերթ մագաղաթ)։* Կազմը՝ *կաշեպատ տախտակ, դրսից երկաթե խաչով, մեջը մագաղաթյա պատառիկներ։* Ձեռագրի վիճակը՝ *լավ պահպանված։* Գրությունը՝ *երկսյուն։* Տողերը՝ *21։* Գիրը՝ *բոլորագիր։* Զարդագրություն՝ *խորաններ, վերնագրերը և սկզբնատառերը կարմիր, թռչնագրեր։* Գրիչը՝ *Խաչատուր աբեղա, ծաղկազարդողը՝ տէր Արիստա-*

---

1 *Բնագրում՝ «ողումեսցի»* (sic)։

2 *Այս երկու բառը գրված է ջնջվածի փոխարեն։*

3 *Այս անունը գրված է ջնջվածի տեղ։*

կէս։ Գրության տեղը՝ *Սանահին*։ Գրության ժամանակը՝ *1485 թ. (ՋԼԴ)*։ Պատվիրատու *(ստացողը)*՝ *Բէկխաթուն*։

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն ն ե ր*

*էջ 235բ$_1$—236բ$_2$ (երկսյուն)*

*Փառք համագոյ անբաժանելի և միասնական սուրբ երրորդութեան, հաւր և որդոյ և հոգոյն սրբոյ։ Սովորութիւն է գերիմաստ վեհից և յոգնահանճար վիպասանից զպատճառ յիշատակաց առնիթեր դնել, այսինքն զգալ բանին աստածոյ ի հայրական ծոցոյ ի փրկութիւն աշխարհի, զոր եկեալ և կատարեաց զփրկագործ տնաւրէնութիւն աւետարանական քարոզութեամբ, կամաւոր չարչարանաւքն և փրկական խաչելութեամբն, թաղմամբն և երեքաւրեայ յարութեամբն. ամրացոյց մարգարէիւք, պարսպեաց առաքելաւք, պսակազգեաց արի մարտիրոսաւք, զուարճացոյց աւետարանական բանիւ, և որպէս եկն, նոյն և համբարձաւ առ հայր և գալոց է նովին մարմնովն և փառաւք հաւր դատել զկենդանիս և զմեռեալս, արդարոցն փառք և պատիւ և մեղաւորացն տանջանք յաւիտենական։ Վասն որոյ տեսեալ զօրայսն անճառ փրկագործութեան խորհուրդ բարէմիտ և սրբահաւատ Բէկխաթուն, ապաշխարհողն ոչ ունելով մարմնաւոր զաւակ ի վերայ երկրի, այլ ըստացաւ զսուրբ աւետարանս յիշատակ յաւիտենական կոյսկ անվախճան կենացն պաշար և առաջնորդ երկնաշաւ|| ճանապարհին, ի հալալ ընչից ակն ունելով ելից ի կենցաղոյս ջերմեռանդ սիրով և անհատական յուսով զաւակ ի Սիովն և զանձ անկողոպտելի վերինն Երուսաղէմ, յիշատակ հոգոյ իւրոյ և բարի ծնաւղացն իւր՝ հաւրն տէր Տիրադին (տր ադին) և մաւրն Ամբարխաթունին և եղբարցն Սարգսին և Խուտադին և Ովելին, զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ, ամէն։ Նաև զհանգուցեալ եղբայրն իւր զԹանղուլն, որ կիսաւրեայ տարաժամ փոխեցաւ առ Քրիստոս և բազում սուգ և դառնութիւն եթող ծնաւղացն, որոյ յիշատակն սորա աւրհնութեամբ եղիցի. /նայ և զդուստրն իւր զԹուրվանդէն զհանգուցեալն ի Քրիստոս և քերցն իւր Սիթխաթունին և...[1] և այլ ամենայն արեան մերձաւորաց կենդանեաց և ննջեցելոց։*

*Եւ արդ ես, յետինս և անարժանս ի կարգաւորաց խաչատուր մեղուցեալ գրիչս, տեսի զսէր և զփափագ Բէկխաթուն ապաշխարողին, զոր վաղուց հետէ ունէր զփափագ սուրբ աւետարանիս, և իմ անընդունակ գոլով յարուեստ գըրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, յանձն առի և բազում աշխատութեամբ և տառապանաւք գծագրեցի զսայ || մեղսամած մատամբ իմով ի կրկնահանգետ և ի գերահռչակ ուխտիս, որ կոչի Սանահին, ընդ հովանեաւ սուրբ աստուածածնիս և հրաշափառ կաթուղիկէիս, ի յառաջնորդութեան տեառն Բարսեղ եպիսկոպոսի և այլ միաբանիցս, ի թուականութեանս հայոց ՋԼԴ [=1485], ի դառն և ի չար ժամանակիս, որով նեղիմք ի բռնութենէ անաւրինաց։ Եւ արդ՝ երեսս անկեալ աղաչեմ զբբաղան դասս քահանայից, որք հանդիպիք սուրբ աւետարանիս ի ժամատեղ կամ պատարագի, յիշեցէք յաղաւթս ձեր զիս՝ զխաչատուր անարժան աբեղայս, որ զանուն միայն ունիմ, և զբազմերախտ հաւրեղբայրն իմ զտէր Վարդան կուսակրաւն աբեղայն և զուսուցիչն իմ զտէր Արիստակէսն, որ բազում աշխատութեամբ ծաղկազարդեաց զսուրբ աւետարանս, և զհամշիրակ*

[1] *Բաց է թողնված։*

եղբայրն իմ զտէր Մկրտիչ կուսակրօն աբեղայն. նայ և զծնաւղսն իմ՝ զհայրն իմ զՅովաննէս և զմայրն իմ զՀայրէկվարդն, որ բազում աշխատանաւք ծառայեցին մեզ. այլև աղաչեմ կրկին մաղթանաւք յիշեցէք ի Քրիստոս և զքոյրսն իմ զՆիկարխաթունին, Աննախաթունին, Նուրիմզարին, հանգուցեալսն ի Քրիստոս: Դարձեալ եղիցի յիշատակ մասին աւրհնութեան ի սուրբ աւետարանս ստացաւղ սորին զԹէկլիխաթունն և զհայր... (թերի)

պրակ Ջ, էջ 10բ:

Մեղսամած գծողիս ողորմեա տէր և Թէկլիխաթուն ապաշխարողին, ստացող սուրբ աւետարանիս:

Հիշատակագրություններ

էջ 69ա (երկսյուն)

Ըղվերջին ստացող սուրբ աւետարանիս, բարի և սրբամիտ Ոսկան էրեցիս, որ ստացաւ զսա ի հալեալ արդեանց իւրոյ, որ նա կազմել զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյն իւրոյ և իւր ծնաւղացն՝ հաւրն Մըկըրտիչ երեցին և մաւրն Մարիամին և հանգ[ուցեալ] եղբայրն իմ Մխիթարն և կող[ակիցն] Նակահն և որդիք նորա Գրիգորն և կողակից Շահլամանն և որդիք Յակոբն, Դաւիթն, ըՍտեփաննոսն [ս]արկաւագն, Յոհան և դուստր Փայսուլթանն, Խանդէկին, Եթ[ա]րէն և Եղբայր Յոհաննէս և կող[ակից] Փաշիկն և որդ[իք]...[1]: Մկրտիչն...[1] եղբ[այր] Յոհաննէս և որդ[իք] Յակոբ, Մկրտիչ, Խաթու[ն]...[1], Խանդաթ: Դարձեալ աղաչեմ զձեզ, ով սուրբ... հք, որ հանդիպէք ի սուրբ աւետարանիս, յիշեց[էք] սուրբ աւետարանս կազմո[ղ]..., որ... կան... ձեր յիշէց... զմեր... որ ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս, առհասարակ ողորմեսցի. ամէն:

Ի թվ[ին] ՌԾ [=1601]. Հայր մ[եր]...

էջ 117բ (միասյուն) վրացերեն

ჩყთა წელთა ივნისის კა სოფელს მარტყოფსა აღიწერა ესე წ~ სახარება მიცემულად, რომელიც იყო კეთილ მყოფნი მარტყოფელი ტერ-იოვანეს სთამოვლათ

Թարգմանություն

Թվականությանն 1891 (սխալմամբ՝ 1800+9+1) հունիսի 21 Մարտղոփ գյուղում [ցուցակա]գրվեց այս սուրբ ավետարանը նվիրատվությամբ բարեկեցիկ Մարտղոփեցի տեր Հովհաննեսի ժառանգների:

Սրա ստորև հայերեն՝ տպատախտակներով (ռ-ի տեղ ր-ով).

Ի փետրվարի 15-ին 1891 ամի տեառն, ողորմութեամբ և զօրութեամբ աստուծոյ կարուցաք եկեղեցիս Մարտղոփի աւետեաց սուրբ աստուածածնայ, ի ժամանակի նորին կայսերական մեծութեան՝ բարեպաշտ թագաւորին Ռուսաց Ալեքսանդրը Ալեքսանդրովիչի 3-ին և ի հայրապետութեան հայոց՝ տն Մակարայ Ա-նոյ, անխոնջ աշխատութեամբ և ջանիւք Թելաւս քաղաքացոց Աղէքսանդրի Պետրոսեան Եազրեանցի և կամաւոր նուիրաբերութեամբ բարեպաշտօն ժողովրդականաց, վասն յիշատակի կենաց իմոց և յիշատակի կենաց ծնողաց հոգւոց Թէլաւեցւոց Պատարկացին, որդւոց նորայ Պետրոսին, Եագորին և Եղենին. ամէն.

Յամի $18^{102}$ [=1902] բստացայ զայս սուրբ աւետարան ի մարտի 10-ի անուանեալ գիւղ:

---

[1] Ջնջված է:

## №8 [=547]

## ՊԱՐԶԱՏՕՄԱՐ

Թերթեր՝ 70 (սկիզբը և վերջը թերի)։ Պրակներ՝ 5, յուրաքանչյուրում 14—16 թերթ, մեջը պակաս։ Մեծություն՝ 15,5×10,5×1 (գրություն 12×8)։ Նյութը՝ թուղթ։ Կազմ չունի։ Ձեռագրի վիճակը՝ վնասված և թերի թե սկզբից և թե վերջից (մեջն էլ թերթերը պակաս)։ Գրությունը՝ միասյուն։ Տողեր՝ 16։ Գիրը՝ նոտրագիր։ Զարդագրություն՝ չունի։ Գրիչը՝ անհայտ։ Գրության տեղը՝ Կարինի մոտ (՞)։ Գրության ժամանակը՝ 17-րդ դար։ Պատվիրատու (ստացողը)՝ անհայտ։

*Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն ն ե ր*

*էջ 28ա*

*Այս գիրք յիշատակ է քայ՛ածի տէր Գէորգին, որ յիւր ի ձեռնատու, որ էր ժամկոչ սուրբ աստուածածնի քաղաք... թ... և Արզրում ձեռնագրեցի քահանա թվին ՌՃԾԷ [= 1708]-ին, որ է ձուկն տանուտէր։*

*էջ 27ա լուսանցքներում կողքից և ներքևից անիմաստ բառերի շարան.*

*Համշէն, սնոսն, մինչնայ գեղն, շինին, եղիզարին, մեծ տանն խւտուր [=խաչատուր] տղայ, մայրն նաշխուկն, շալակն առի... սեպանմրեր ի ժԱ, Համշէն... գեղջ տէր Առաքելին տղան Կարապետն, գոյնցի տէր Վարդան մկէրտեց միջ գեղն...*

## № 9 [=548]

## ԽՈՐՀՐԴԱՏԵՏՐ ՊԱՏԱՐԱԳԻ

Թերթեր՝ 21։ Մեծություն՝ 29×22×0,5 (գրություն 23,5×15)։ Նյութը՝ թուղթ։ Կազմ չունի։ Ձեռագրի վիճակը՝ վնասված և թերի։ Գրությունը՝ երկսյուն։ Գիրը՝ խոշոր բոլորագիր։ Զարդագրություն՝ 1 նկար (էջ 1 բ), 1 խորան (էջ 2ա) և 4 մանրանկարներ (էջ 4ա, 8ա, 9ա, 11ա, 13 դուրս կարած)։ Գրիչը՝ անհայտ։ Գրության տեղը՝ անհայտ։ Գրության ժամանակը՝ 17-րդ դ. (՞)։ Պատվիրատու (ստացողը)՝ անհայտ։

*Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն*

*էջ 21բ$_2$*

*Յիշատակ է խորհրդատետրս պարոն Գորգինին և կողակցին Մարիամ խաթունին և իւր որդին Փարսադանին և Քայխոսրովին և որդին Գորգինին և ամենայն ազգականացն ողորմի, որ է արհնեալ յաւիտեանս. ամէն։ Հայր մեր։*

## № 10 [= 549]

Հիշատակարան կցված 1685 թ. Վենետիկում տպված ավետարանին[1]։ Մեծություն՝ 17,5×13×4,5 (13×9,5)։ Կազմը՝ կաշեպատ տախտակ, մեջը պատառիկներ։ Դրսից «Խաչյալ Քրիստոսի»-ի երկաթե զարդ։

---

[1] Տե՛ս Գ. Զ ա ր բ հ ա ն ա լ ե ա ն, Հայկական մատենագիտութիւն, Վենետիկ, 1883, էջ 76։

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն (վերջում)*

*Յիշատակ է այս սուրբ աւետարանս Կիրակոսին և կողակցին Գօզչախին և հան[գ]ուցեալ որդին Անանին և կողակցին Գուլինին և կենդանի որդին Ղազարին և կողակիցն Հառոմին։ Արդ և ես, Կիրակոս, իմ որդի Ղազարս գնեցինք այս սուրբ աւետարանս վասն յիշատակ Անանի հոգոյն համար, հալալ ընչիւք և ազրանօք մերովս։ Ով, սուրբ եղբայրք և ընթերցողք, [յո]րժամ ընթեռնուք կամ օրինակէ[ք], մէկ լի բերանով հոգոց հանգուցելոց և Քրիստոս որդի և հայր մեղայ ասացէք։ Քրիստոս աստուած ըն[դ] ձեզ ողորմի իւր միւս անգամ գալըստեանն. ամէն. Թվին ՌՃԿԳ [= 1714]։*

*Հայր մեր, որ յերկ[ինս ես...]։*

## № 11 [=550]

## ԳԱՆՁԱՐԱՆ

Թերթեր՝ *199։* Պրակներ՝ *18, յուրաքանչյուրում 12 թերթ։* Մեծություն՝ *21×14,5×4 (գրությ*ան *15,5×10)։* Նյութը՝ *թուղթ։* Կազմը՝ *կաշեպատ տախտակ։* Ձեռագրի վիճակը՝ *սկզբից և միջից քայքայված, վերջը թերի։* Գրությունը՝ *միասյուն։* Տողեր՝ *22։* Գիրը՝ *բոլորագիր։* Զարդագրություն՝ *չունի, վերնագրերը և սկզբնատառերը կարմիր։* Գրիչը՝ *Խաչատուր երէց։* Գրության տեղը՝ *Ճիխել գյուղ։* Գրության ժամանակը՝ *1481 թ. (ՋԼ)։* Պատվիրատու *(ստացողը)*՝ *«Անտոն կրաւնաւոր, հայր վանաց Զոլդու աստուածածնին»։*

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն*

*Վերջում (էջ 199ա)*

*...Գրեցաւ գանձարանս ձեռամբ Խաչատուր իրիցու փցուն և տխմար գրչի ի գիւղս, որ կոչի Ճիխել, ընդ հովանեաւ ծիրանաւոր աստուածածնիս, հրամանաւ և ծախիւք սրբասէր և գերալուր անձին Անտոն կրաւնաւորի՝ հայր վանաց Զոլդու աստուածածնին, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ իւր և ծընողաց իւրոց։ Ով զմեզ յիշէ, աստուած զինքն ի բարին յիշէ, և նմա փառք յաւիտեանս. ամէն։ Գրեցաւ ի Թվ[ին] հայոց ՋԼ [=1481]։*

*Սորեն վրացերեն փոքրատառ խուցուրի գրով.*

ხარიტონს შეუნდვენ (შ͞ნ) ღმერთმან (ღ͞ნ) ამინ (ა͞ნ), *այսինքն՝*

*«Խարիտոնին աստված ողորմի, ամեն»։*

*էջ 199բ (եղծված)*

*[Փառք հաւր և] որդոյ և սուրբ հոգոյն... գրեցի զԳ[անձարանս] յիշատակ ինձ և ծնողացն... Կիրակոսին և... Մխիթար և որդոյն իւր Գրիգոր. և աղաչեմք որք... կամ աւրինակէք ստուգաբանեալ... Գրիգոր... ննջեցեալսն ի սուրբ յաղաւթս ձեր յիշեցէք և [աստուած] զձեզ յիշէ յիւր սուրբ արքայութեան. ամէն։*

*Հ ի շ ա տ ա կ ա գ ր ո ւ թ յ ո ւ ն ն ե ր*

*էջ 3բ—5ա (ներքևի լուսանցքում)*

*Ես, Ռամանդիս, գնեցի Գանձատետրս յիշատակ ինձ և կողակցին իմոյ Խօշիարին և հօրս Մաղճթնի որդի Ալադադին, մօրս Անդալատին և զաւակացս (բնագրում՝ զօակացս) Լամադին, Մամուկին, եղբօրս Նուրմէրդին, դստերաց Յայգումդուն, Շամանդուխին, Ազրիմինդուխին, Լալգունալին, Խանսուլթանին,*

քվերս Սայիփուլթանին || և ամենայն արեան մերձաւորաց (ըն. մերձօրաց) իմոց, և տվի յիշատակ ինձ և Կարապետ եպիսկոպոսին. ով որ կարդայք [կամ] արինակէք, բերան մի ողորմի տաէք Ռօմանգուն և իւր ծնողացն, և ||աստուած ձեզ ողորմի իւր ահեղ ատենին. ամէն:

էջ 6բ

Երազ է, կատարի:

էջ 45ա վրացերեն აქა ღამეძინა, այսինքն «Այստեղ քունս տարավ»:

էջ 142ա

Վերջին ստայցողի գրոցս ողորմի աստուած Մրանաղին, Յիայխաթունին, Ամիրփաշային ու Նոյփարսին. աստուած ողոր[մ]ի Սարգիսին: Ով որ մէ բերան կարդա... որ սաէ ստացողի գրւոց... լէր... յարքայութիւն. ամէն:

№ 12 [=551]

ՄԱՇՏՈՑ

Թերթեր՝ 55 (համարակալված է 2—56): Մեծությունը՝ 19×13,5×1 (գրության 15×10): Նյութը՝ թուղթ: Կազմ չունի: Ձեռագրի վիճակը՝ սկզբից և վերջից վնասված և թերի: Գրությունը՝ միասյուն: Տողերը՝ 22: Գիրը՝ բոլորգիր: Զարդագրություն՝ չունի: Գրիչը՝ անհայտ: Գրության տեղը՝ «Ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորիչի ի գաւղս Յարայմիշի, որ կոչի Յարրիկ»: Գրության ժամանակը՝ 1510 թ. (ՋԾԹ): Պատվիրատու (ստացողը)՝ Պարսեղ երէց:

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն

էջ 35 բ

...Ըստացաւ Մաշտոցս Պարսեղ երէցս յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց՝ հաւր իւրոյ տէր Ակոբին և մաւրն իւրոյ Յամամայ և կենակցին իր Կուզլուին, եղբայրն իւր հանգուցեալն ի Քրիստոս Մ[ի]մեաւն և Յոյնանին. ամէն:

Աղաչեմ յիշել ի տէր և աստուած յիշողացդ ողորմեցի, որ և առատ անէ ի տուրս... ի ձեզ և մեզ, ողորմեցի, ամէն: Եղիցի, եղիցի. ի թվիս ՋԾԹ [=1510], ի սուլտանութեան տաճկաց շահին, հայրապետութեան տեառն Ըստակէսի, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորիչի, ի գաւղս Յարայմիշի, որ կոչի Յարրիկ...

էջ 27 (28)բ ներքևից

Այս երկու թուխտս գիշերով գրեցի... թողութիւն արէք:

Հ ի շ ա տ ա կ ա գ ր ո ւ թ յ ո ւ ն

էջ 36(37)բ ներքևից

...Զվերջի[ն] ըստացող Մաշտոցիս Պուստախ և կողակիցն իւր Հայխթոյ և որդին իւր Ղասամայ և էրեց որդին իւր տէր Դաւիթ աղաչեմ զձեզ, ընթերձողք տառիս, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր և յաստուած յիշողացդ ողորմեսցի. ամէն: Տէր աստուած:

№ 13 [=552]

ՀԵՔԻՄԱՐԱՆ

Թերթեր՝ 220 (սկզբից 32 էջ պակաս), համարակալված 33—220 էջ: Պրակները՝ խառնված: Մեծությունը՝ 21×16×1 (գրության 17×12): Կազմը՝

կաշի։ Նյութը՝ թուղթ։ Ձեռագրի վիճակը՝ վնասված, սկզբից և վերջից թերի։ Գրությունը՝ միասյուն։ Տողերը՝ 28։ Գիրը՝ նոտրագիր։ Զարդագրություն՝ վերնագրերը և սկզբնատառերը կարմիր։ Գրիչը՝ անհայտ։ Գրության տեղը՝ անհայտ։ Գրության ժամանակը՝ անորոշ։ Պատվիրատուն (ստացողը)՝ Ղարանցի Քասբարի որդի Սահակ։ Բովանդակությունը՝ Բժշկարան. տերմիններ ա—ս (մնացածը չկա). 193—220 էջերում ցանկը։

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն*

*էջ 193*

*Յանկ Հէքիմարանիս բաղում աշխատանօք արարեալ ի վերայ այլեւայլեաց պարզապէս ի վայելումն Ղարանցի Քասբարի որդի Սահակիս. և օվ ոչ հանդիպեսցէ, միով կարմիրիվ (*) յիշեսցէ։*

*Հ ի շ ա տ ա կ ա գ ր ո ւ թ յ ո ւ ն (Կազմի եռեից)*

*Հայր Խաչատուր, եղբայր Սար[գիս], կողակից Յարինին և իւր մերձաւորացն ամէն. ով որ կար[դար], մէկ բերան ողորմի ասէք, աէր ձեզ ողորմի։*

№ 14 [= 553]

ԸՆԹԵՐՑՈՒԱԾՔ

(Պ ա տ ա ռ ի կ)

Թերթ 1։ Մեծությունը՝ 26(13)×18 (գրությամբ 17(8,5)×13)։ Նյութը՝ մագաղաթ։ Կազմ չունի։ Ձեռագրի վիճակը՝ թերթը ծալած (կիսով), վերևը պատռած։ Գրությունը՝ երկսյուն։ Տողերը՝ 22 յուրաքանչյուր սյունակում, որոնք տալիս են չորս ընթերցվածք՝ յուրաքանչյուրը 11 տող։ Գիրը՝ երկաթագիր։ Զարդագրություն՝ չկա։ Թերթի ներքևում գրված է՝ ԽԱԶ։ Գրիչը՝ անհայտ։ Գրության տեղը՝ անհայտ։ Գրության ժամանակը՝ մոտավորապես 10—11 դդ.։ Պատվիրատուն (ստացողը)՝ անհայտ։

*Բ ո վ ա ն դ ա կ ո ւ թ յ ո ւ ն ը*

1. (11 տող)... զաշ[խարհ ստեղծ եւ] զանարատ բազու/կս քո ի վերայ փր/կավետ խաչին եւ/նեղեր զուրբ զա/րեւնդ կեցուցա/նել զվտարանդե/ալսն ի ծառայու/թենէ մահու եւ մե/ղացդ ունայնի...

2. (11 տող)... այ/ժմ եւ միշտ եւ յաւ/[իտեանս]... գիր, տէր, զամենասուրբ /ձեռքն քո ի վերայ/ սորին նշանիս եւ / աւրհնեա զխաչս / զայս եւ տուր յաղ/թանակ փրկել ժո/ղովրդեան քո պար/ծելոյս ի կենսա/բեր անուն քո. այժ/[մ եւ միշտ և յաւիտեանս...]

3. (10 տող)... խաչին ի պահպա/նութիւն անձանց / մերոց եւ ի պատ/ճառք երկրպագու/թեան սրբոյ և գի/ղական երրորդու/թեանդ եւ մի աստուած/ութեանդ, հաւր եւ / որդւոյ եւ հոգւոյ[ն] / սրբոյ. այժմ եւ մ/[իշտ և յաւիտեանս...]

4. (11 տող)... չարիս ընդ /մարտ թշնամւոյ. /զի քո է ամենաութիւն / եւ զաւրութիւն եւ / փառք յաւիտեան։ /Ապա այս կանոն կատարի. /սաղմոս Դէ պատմեցեներ/ բերերցուած ի ծննդոց[1]։ /«Եւ ել Յակոբ ի /ջրհորոյ անտի/ երդման եւ գնաց/ [ի Խառան...]»։

---

[1] Ընդգծվածը վերնագիր է։

## № 15 [=554]

## ՀՄԱՅԻԼ
## (Պատառիկ)

Թերթ 1։ Մեծությունը՝ *47,5×8 (գրությանը 6)*։ Նյութը՝ *թուղթ*։ Կազմ *չունի*։ Ձեռագրի վիճակը՝ *սկիզբն ու վերջը թերի (պատառ)*։ Գրությունը՝ *միասյուն շրջանակով*։ Տողերը՝ *ամբողջը 55*։ Գիրը՝ *բոլորագիր*։ Զարդագրություն՝ *վերնագիրը կարմիր*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *անորոշ*։ Պատվիրատու *(ստացողը)*՝ *անհայտ*։

*Բովանդակություն*

*Երկու ծիր, որոնց վերևից կարդացվում է. «պաշտ իմ»։*

*ա. ծիր (8 տող). «Ի լերինս, ուստի /եկեսցէ ինձ օգնութիւն։/ Օգնութիւն ինձ ի տեառնէ եկես/ցէ, որ արար զերկինս և զերկիր։ /Մուտ զօրութիւն ծառայիս/ քո, կեցոյ զորդի [աղա]խնո[յ] /քո և արա... նշ/ան... [փրկ]ութեան»։/*

*բ. ծիր (8 տող). «Տեսցեն ատ/եցիք իմ և ամաչեսցեն/։ Դու, տէր, ՚օգնեցեր և/ մխիթարեցեր զիս։ Փառք/ հայր և որդոյ և հոգւոյն սրբոյ, /այժմ և միշտ և յաւիտե/անս յաւիտենից [ա]/մէն»։*

*Ապա կարդացվում է «Տաղ խաչին» (Գր. Նարեկացու նմանությամբ). Ապա՝ «Գովեստ սուրբ խաչին»։*

## № 16 [=555]

## ՈՒՐԲԱԹԱԳԻՐՔ

Թերթեր՝ *110*։ Մեծությունը՝ *15,5×10,5×1,5 (գրության 10,5×7)*։ Նյութը՝ *թուղթ տարբեր որակի*։ Կազմը՝ *կաշեպատ տախտակ (մնացել է ա. մասը, մյուսը ո՛չ). մեջը փակցված է կտոր*։ Ձեռագրի վիճակը՝ *քայքայված*։ Գրությունը՝ *միասյուն*։ Տողերը՝ *16*։ Գիրը՝ *բոլորագիր*։ Զարդագրություն՝ *չունի*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *16—17-րդ դդ.*։ Պատվիրատու *(ստացողը)*՝ *Ամիր-բէկ, Միրզա-բէկ և նրանց մայր Փարասը*։

*Հիշատակարան*

*էջ 77ա*

*...Գրեցաւ գիրս պահպանութեան և նախախնամութեան ծառային աստուծոյ Ամիր-բէկին, Միրզայ-բէկի[ն] և իւր (բնագրում՝ ուր) մարն Փարասին և ամենայն տանեացն մեծի և մեծայմեծացն ամենիցուն. ամէն. ի դէմ ծառայիս աստուծոյ Ամիր-բէկէ, Միրզա-բէկէ։*

*Հիշատակագրություններ*

*էջ 70ա. Թէմուրաղն, որ փախաւ, թւին ՌՁԲ [=1633]։*

*էջ 72ա—բ*

*...ամենայն աղանդք և կախարդութիւնք ի ծառայիս աստուծոյ Ամիր-բէկէ և Միրզա-բէկէ և իւր մարն Փարասին. ամէն։ Ով եղբարք, յամէն կիրակի կարդալ տուք ի տան քում, և դուք ամէն խոնարհ ի ներքև նստէք և ամենայն ստացուածքն ձեր յաւելնայ և ուր ձեր վաչողի, և նիաթք և կախարդութիւնք / ոչ մերձենայ ի ծառայիս աստուծոյ Ամիր-բէկին, Միրզա-բէկի[ն] և ի իւր մարն Փարասին. ամէն։*

*Հաստատով խոստովան[իմ]ք...*

*էջ 74բ. աստուած մեր շատ վա...ստրին է:*

*էջ 75ա*

*Հարայպետին եղիցի պաշտպան և աւգ[ն]ական ծառային աստուծոյ Ամիր-բէկէ և Միրզա-բէկէ. ամէն եղիցի:*

*էջ 75ա (այլ գրով)*

*Ես, տէր Աբ[է]լն, գ[ր]եցի. ով որ կա[ր]դա, մի բերան ողորմի ասէ:*

*էջ 76բ*

*Փառք համագոյ սուրբ երրորդութեան, հաւր և որդոյ և հոգոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն...: Ես, Ամիրջանս, գնեցի զսուրբ գիրս յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ հայրն իմ Աստատուրին և մայ[ր]ն իմ Գաւրանդուխտին, որ հանգուցեալ է առ Քրիստոս. և վերջին (՞) մայ[ր]ն իմ Գուլզանն և կողակիցն իմ Թէթրոյին[1] և փեսայ զսուրբ գիրս ի ձեռն այլոց գերի ցանգացայ և առայ ափ ի հալալ ընչից իմոց, ափ ի ձեռն փ̅ի (՞) Դաւթին, որ կոչի Շամթայ[2] ի դուռն սուրբ նշանին. որ ով կարդաք կամ աւրինակէք, ա. բերան ողորմի ասէք. ձեզ ողորմեսցի [յ]իւր մի[ւ]ս անգամ գալըստե[ա]ն, ամէն:*

*էջ 76 բ (լուսանցքում)*

*...և ի թագաւորութեան պարոն Թէմուրազին[3] և ի հայրապետութեան տէր Մովսէսին[4]:*

## № 17[=556]

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ
(Պատառիկ)

Թերթեր՝ 2 (*էջք 420ա-բ, 461ա-բ*): Մեծությունը՝ *33×23* (*գրության 28×19,5*): Նյութը՝ *հին թուղթ*: Կազմ *չունի*: Ձեռագրի վիճակը՝ *քայքայված, պատառիկ ԽԲ և մի այլ պրակից*: Գրությունը՝ *երկսյուն*: Տողերը՝ *37*: Գիրը՝ *բոլորագիր*: Զարդագրություն՝ *վերնագրերը և սկզբնատառերը կարմիր*: Գրիչը՝ *Յոհաննէս*: Գրության տեղը՝ *անհայտ*: Գրության ժամանակը՝ *անորոշ*: Պատվիրատուն *(ստացողը)*՝ *Սերուն քահանա*:

*Բովանդակությունը*

*էջ 420ա—բ. վերջ «Վկայաբանութեան Յաղիտայի»:*

*էջ 420բ. սկիզբ նոր տեքստի (Հրոտից Ժ և Յուլիսի ԺԶ):*

*«Վկայաբանութիւն սուրբ ճգնաւորացն Կարրի և Պաթերմութէոսի և Աղէքսանդրի»*

---

1 *Թէթրո, իբրև հասարակ բառ, վրացերեն նշանակում է «սպիտակ»:*

2 *Շու[ա]մթայ՝ վանքի անունն է Թելավի մոտ*

3 *Թեյմուրազ Ա. թագավոր՝ 1606—1616 (Կախեթի), 1623—1632 (Քարթլիի և Կախեթի), 1634—1648 (Կախեթի):*

4 *Ամենայն հայոց կաթողիկոս Մովսես Գ Տաթևացի, 1629—1632:*

*էջ 461 ա. վերջ «Վկայաբանութեան Թէոդորա»:*
*էջ 461բ. սկիզբ նոր տեքստի «Յայսմ աւուր յիշատակ Աշոտոյ Բագրատունւոյ Հայոց թագաւորի. Սա առաջին թագաւորեաց յազգէն Բագրատունեաց...»*

*Հիշատակարաններ*
*էջ 420բ.*

*Եւ յամս բարեպաշտ ինքնակալին Կոստանդիանոսի ազդմամբ հրեշտակաց աստուծոյ յայտնեցան նշխարք սրբոցս Կիրակոսի և մօրն նորին Յուղիտայի, որոց աղօթիւքն ողորմի Քրիստոս ստացողի գրոցս Ծերուն քահանայի և ծնողացն նորին՝ Մկրտչին և Իմշա-խաթունին և կենակցին Սանդուխտին և զոքանչին Զարմանդուխտին և աներոջն Մխիթարին և Յովանէս գծողիս:*

*էջ 461բ.*

*...և թագաւորէ Աշոտ որդին Աբասայ ամս ԻԷ ի թվին ԴՃ և Բ [= 953], որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի և մեզ մասն ընդ լաւացն լիցի, մանաւանդ ստացողի գրոցս Ծերուն քահանայի և ծնաւղաց նորին Մկրտչին և Իմշա-խաթունին և կենակցին. ամէն:*

№ 18 [=557ա]

*ՀՄԱՅԻԼ*

(Պատառիկ)

Թերթ 1: Մեծությունը՝ *225×7,5*: Նյութը՝ *թուղթ*: Կազմ *չունի*: Ձեռագրի վիճակը՝ *վնասված, այսինքն թերի սկզբից և վերջից*: Գրությունը՝ *միասյուն*: Գիրը՝ *բոլորագիր, նոտրագիր*: Զարդագրություն՝ *նկարներ. տեքստը տեղ-տեղ կարմիր*: Գրիչը՝ *Յակոբ*: Գրության տեղը՝ *անհայտ*: Գրության ժամանակը՝ *1774 (ՌԲՃԻԳ) 15/10*: Պատվիրատու *(ստացողը)*՝ *Յակոբ*: Բովանդակությունը՝ *կախարդական տեքստեր, սկզբից՝ «Զայս վրան պահէ, որ զաւակն ալալ մնայ և ապրի. Սաղմոս Դաւթի»...*

*Հիշատակարաններ*

*ա. ...զգիր բերան որ ոչ կարեն չար խօսիլ ի դէմ ծառայ[իս] աստուծոյ Յակոբայի. Տէր աստուած Յիսուս Քրիստոս. գիրն ես գրէմ և հրամանաւն աստուծոյ հալս... ի դէմ ծառայ աստուծոյ Յակոբայի. ամէն:*

*բ. Գիրս գրվեցացա թվին ՌԲՃԻԳ [=1774] հոկտեմբերին ԺԵ-ին. ամէն:*

№ 19 [=557բ]

*ՀՄԱՅԻԼ*

(Պատառիկ)

Թերթ 1: Մեծությունը՝ *88×8,5*: Նյութը՝ *թուղթ*: Կազմ *չունի*: Ձեռագրի վիճակը՝ *վնասված, թերի (պատառիկ)*: Գրությունը՝ *միասյուն*: Գիրը՝ *բոլորագիր*: Զարդագրություն *չունի, վերնագրերը կարմիր*: Գրիչը՝ *անհայտ*: Գրության տեղը՝ *անհայտ*: Գրության ժամանակը՝ *մոտավորապես 18-րդ դ.*: Պատվիրատու *(ստացողը)*՝ *անհայտ*: Բովանդակությունը՝ *կախարդական*: Հիշատակարան *չունի*: Հիշատակագրություն *չունի*:

№ 20 [=557գ]

ՀՄԱՅԻԼ

Թերթ 1։ Մեծությունը՝ 29×8։ Նյութը՝ *թուղթ*։ Կազմ *չունի*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *մոտավորապես* 18-րդ դ.։ Պատվիրատուն (*ստացողը*)՝ *Մերգի*։ Բովանդակությունը՝ *կախարդական, տեղ-տեղ հմայական նշաններ*։

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն (մեջտեղում)*
*«Եղիցի բժշկութիւն ծառայիս աստուծոյ Մերգին»*։

№ 21 [=557գ]

ՀՄԱՅԻԼ

Թերթ՝ 3 *կտոր*։ Մեծությունը՝ *առաջինի* 165×7,5 (8), *երկրորդի* 80×7,5, *երրորդի*՝ 170×7,5։ Նյութը՝ *թուղթ*։ Կազմ *չունի*։ Ձեռագրի վիճակը՝ *վնասված, թերի (պատառիկներ)*։ Գրությունը՝ *միասյուն (բոլորի)*։ Գիրը՝ *բոլորագիր*։ Զարդագրություն՝ *չունի*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *մոտավորապես* 18-րդ դ.։ Պատվիրատուն (*ստացողը*)՝ *Կուլասա՞ր, թե՞ Մերցի*։ Բովանդակությունը՝ *կախարդական*։

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն*

*ա. Եղիցի բարեխօսութեամբ սրբոյն Նէրսէսի հայրապետին, խափանեալ, եղիցին ամենայն կապք և կախարդութիւնք և պատահմունք ի ծառայէս աստուծոյ Կուլասարէն և տանէն և ի յընտանեացն, ի զաւակէն, ի ճնչից և ապրանացն և ամենայն ըստածացոցն և յազգականացն. ամէն*։

*բ. Եղիցի պաշ[տ]պան Մերցին*։

№ 22 [=№ 558ա]

ՃԱՌԸՆՏԻՐ
(Պատառիկ)

Թերթ 1 (*էջ 283ա-բ*)։ Պրակներից *հասել է 32-ից մի թերթ*։ Մեծությունը՝ 34,5×26 (*գրության* 26,5×18,5)։ Նյութը՝ *թուղթ*։ Կազմ *չունի*։ Ձեռագրի վիճակը՝ *պատառիկ*։ Գրությունը՝ *երկսյուն*։ Գիրը՝ *բոլորագիր*։ Զարդագրություն՝ *զարդանկարներ լուսանցքներում, վերնագրերը և սկզբնատառերը կարմիր*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *անորոշ*։ Պատվիրատուն (*ստացողը*)՝ *պարոն Աբրահամ, ընտանեօք*։ Բովանդակությունը՝ *«Առաջին ուրբաթին երանելոյն Յոհաննու Ոսկեբերանի ասացեալ ի փորձանս աւրինակի և ի պատասխանիս Քրիստոսի»*։

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն (Նախքան հիշյալ տեքստը)*

*«Պարոն Աբրահամին և կողակցուն նաթէլուն և որդւոցն Դաւութին, Կոստանդին և Բալանդիարին...»*։

№ 23 [=558*բ*]

*ԱՒԵՏԱՐԱՆ*

(Պատառիկ)

Թերթ *1*։ Մեծությունը՝ *թերթ չորս կողմից պատառոտած*։ Նյութը՝ *թուղթ*։ Կազմ *չունի*։ Ձեռագրի վիճակը՝ *պատառիկ թերի*։ Գրությունը՝ *երկսյուն*։ Գիրը՝ *բոլորագիր*։ Զարդագրություն՝ *խորան զարդարված*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *մոտավորապես 14—15-րդ դդ.*։ Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ*։ Բովանդակությունը՝ *ավետարան ըստ Ղուկասու (մի պատառիկ)*։ Հիշատակարան *չունի*։ Հիշատակագրություն *չունի*։

№ 25 [=558*գ*]

*ԱՒԵՏԱՐԱՆ*

(Պատառիկ)

Թերթ *1*։ Մեծությունը՝ *30×20*։ Նյութը՝ *թուղթ*։ Կազմ *չունի*։ Ձեռագրի վիճակը՝ *պատառիկ թերի*։ Գրությունը՝ *երկսյուն*։ Տողերը՝ *11*։ Գիրը՝ *երկաթագիր*։ Զարդագրություն *չունի*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *անորոշ*։ Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ*։ Բովանդակությունը՝ *ավետարան ըստ Մատթէոսի ԻԳ, 16—21*։ Հիշատակարան *չունի*։ Հիշատակագրություն *չունի*։

№ 25 [=№ 558*գ*]

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ*

(Կեղծիք)

Թերթ *1*։ Մեծությունը՝ *16×11*։ Նյութը՝ *կապույտ թուղթ*։ Կազմ *չունի*։ Ձեռագրի վիճակը՝ *թերի*։ Գրությունը՝ *միասյուն*։ Տողերը՝ *20*։ Գիրը՝ *նոտրագիր*։ Զարդագրություն *չունի*։ Գրիչը՝ *Աղաբէկ Ռուբէնեան, Սյունեաց իշխան (՞)*։ Գրության տեղը՝ *Նորավանք (՞)*։ Գրության կեղծ ժամանակը՝ *1503 թ. (ՋԾԲ)*։ Պատվիրատուն *(ստացողը)*՝ *(՞)*։ Բովանդակությունը՝ *Կեղծ պատճեն մի ինչ որ ավետարանի հիշատակարանի, որին կցված են զանազան անիմաստ հիշատակագրություններ*։

*Հիշատակարանը*

*1ա. Շնորհօք ամենազօրին աստուծոյ և կամակցութեամբն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ես, Ռուբէնեան Աղաբէկս, Սիւնեաց իշխանս ի զարմէն Սմբատայ մեծ իշխանէն, եառ սուրբ աւետարանս յիշատակ Նորավանից սուրբ եկեղեցոյն Սիւնոյ, որ և կառուցեալ նախնեացն մերոց Ռուբէնեանց։ Է ս[ա] յիշատակ ծնողացս իմոց կայ(?) Դաւիթ-բէկին և պապուն իմոյ Նազարէթ-բէկին և համայն ընդանեացն և ամենայն զարմից և զաւակաց իմոց՝ Վարդանին և Նահապետին աղունցն, եւ ապա որ և ձեռնամուխ լիցի սորա գրաւելու կամ ծախելու, եթէ մերայնոցն և եթէ այլոցն, անէծս կաէ... և Յուդա[յ]ի ընկալցի։ Թւին հայոց ՋԾԲ-ին [=1503՞]։*

*Հախ է (՞)*

Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն ն ե ր (անիմաստ)՝

1ր. ա. պարտքագրութիւններ,
բ. «ծերս ընծայից պայծառ բարգև»,
գ. «... աց զԱղքանագեան զարմի բաշխեց»,
դ. «ո՞վ մահու» են։

№ 26 [=581]

ԳԻՐՔ ԱՂՕԹԻՑ
(Ընդօրինակություն)

Թերթեր՝ 196 էջ համարակալված։ Մեծությունը՝ 13,5×9,5×1,5 (գրության 10,5×7)։ Նյութը՝ թուղթ։ Կազմը՝ կաշեպատ տախտակ։ Ձեռագրի վիճակը՝ լավ։ Գրությունը՝ միասյուն։ Տողերը՝ 14։ Գիրը՝ նոտրագիր։ Զարդագրություն՝ բոլոր սկզբնատառերը թռչնաձև կամ մանկաձև են. թռչնաձև զույգ ծիտ՝ էջ 51, 63, 88, 101, 109, 114, 122, 147, 158, մի ծիտ՝ էջ 13, 121, մանկաձև՝ զույգ տղաներ էջ 130, 166, մի տղա՝ 137, ինչ-որ կենդանի՝ էջ 152։ Գրիչը՝ Յակոբ դպիր։ Պատվիրատուն (ստացող)՝ Թադէոս վարդապետ։ Գրության տեղը՝ Լիմ անապատ։ Գրության ժամանակը՝ 1847 (ՌՄՂԶ)։

Տ ի տ ղ ո ս ա թ ե ր թ ը
էջ 1ա (1ր մաքուր)

Գիրք աղօթից հաւաքեալ ատի և անգի ուրումն բանասիրի, ի վայելումն աղօթող հարցն և եղբարց, ի հայրապետութեան տեառն Ներսէսի սրբազան կաթուղիկոսի ամենայն հայոց, ի 1847 ՌՄՂԶ. գրեցաւ ի սուրբ անապատ Լիմ, ձեռամբ ուրումն։

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն
էջ 196

Շնորհիւ և ողորմութեամբ աստուծոյ և բարեխօսութեամբ սրբոյ Գէորգայ զօրավարին հանկ ելեալ աւարտեցաւ գիրքս ի վայելումն Թադէոս վարդապետին։ Արդ, ով սիրելի հարք և եղբարք, յիշեցէք միով Հայր մերիւ զրող սորին նուաստ Յակոբ դպիրս. խնդրեմ սխալանացն մերոց ներել։

Վերջ։

Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն ն ե ր

էջ 2ա (2ր մաքուր)

Գիրքը պատկանում է Լևոն Գրիգորեան Խոջամիրեանցին. Թիֆլիս 1912 թ.։ 22 յունիսի 1920 թ. վաճառեցի Կ[ովկասեան] Հ[այոց] Բ[արեգործական] Ընկերութեան գրադարանին. Լևոն Խոջամիրեանց։

էջ 196 ի վրա 2 հատ կնիքներ, որոնց մեջ կարդացվում է ՄՏԳ 1892։

№ 27 [= 582]

ՄԱՍՆ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ

Թերթեր՝ 3 կտոր (5 էջ) իրար կպցրած։ Մեծությունը՝ առաջինի 30×10 (հմայիլի նման), 2 էջ, երկրորդի 24×10,5 (հմայիլի նման), 2 էջ, երրորդին 20,5×10, 1 էջ։ Նյութը՝ թուղթ։ Կազմ չունի։ Ձեռագրի վիճակը՝ թերի։ Գրու-

թյունը՝ *միասյուն*։ Տողերը *տարբեր*։ Գիրը՝ *հայերեն նոտրագիր և վրացերեն «մխեդրուլի»*։ Զարդագրություն *չկա*։ Գրիչը (գրիչները) *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *18-րդ դ.*։ Բովանդակությունը՝ *քաղվածքներ աստվածաշնչից հետևյալ կարգով, ավ. Ղուկ. 12,48, ավ. Յովհ. 12,32, Ծննդ. 39. 9, Կորնթ. 3, 22, Թուղթ Յովհ. 4, 6, ավ. Ղուկ. 19,5, Սաղմոս 31,4 Ծննդ. 1, 26, Սաղմոս, 66,7, Եսայի 6,3 ևն*։

## № 28 [=583]

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԱԿԵԴՈՆԱՑՒՈՅ

Թերթերը՝ *124*։ Պրակները *14, յուրաքանչյուրում 8—10 թերթ*։ Մեծությունը՝ *21×14,7×3 (գրության 18,5×11)*։ Նյութը՝ *հին թուղթ*։ Կազմը՝ *կաշեպատ տախտակ*։ Ձեռագրի վիճակը՝ *լավ պահպանված*։ Գրությունը՝ *միասյուն*։ Տողերը՝ *21*։ Գիրը՝ *բոլորագիր (տարբեր ձևերով)*։ Զարդագրություն *չկա*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *1606 (ՌԾԵ)-ից առաջ*։ Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ*։

*Տիտղոսաթերթերը*

*էջ 1ա. Պատմութիւն մեծի աշխարհակալին Աղէքսանդրու Մակեդոնացւոյ. Կեանք վարուց քաջութեան և գործք արիականք...։*

*Այս է գիրքս, որ և տետրակ պատմութեան Աղէքսանդրու յաղթ[ող] թագաւորին, թվին ՌՃԿԹ-ին [=1720]։*

*Հիշատակարան*

*էջ 124ա*

*Ով, սուրբ ընթերցողք, զաւկաւ բանիս գրողս յիշման արժանի արարէք. գրեցաւ սայ ի մայիս ամսոյ Բ և ի թվականիս հայոց ՌԾԵ [=1606]. անմեղագիր լերուք, զի կար մեր այս է, և աստուած յիշողացդ և յիշեցելոց ողորմեսցի. ամէն։*

*Վերստին ստացաւղ այս՝ Աղէկսանդրս՝ մեղաւոր և անարժան էթէմայցի Նիկողոս ի վայելումն անձին իւրում և իւր յարու ազգատոհմին, ով ընթերցողք, տո (՞) իշատակս ողորմեա ասացէք իմ հօր Այմիշասի (՞), Միրյանսապին և իմ ծնողաց Այմիշասի (՞) Վարթխաթուն. Յիսուս Քրիստոս։*

*Հիշատակագրություններ*

*էջ 1բ*

*Ով, սիրելիք մեր պատվական,*
*Եթէ հանդիպիք այսմ պայման,*
*Զիս յիշեցէք ի ձեր յատեան*
*Տէր Յոհանէս եմ ձեր ազգական։*
*Յիշատակ տուեց մայրագիր իմայն,*
*Կատարինա է, որ ես որդի կոչիմ նորա.*
*Թվական է օրհման ՌՃՀԴ-ին[1] այն*
*Փետրվարի ԻԱ-ին այն։*

1 *Այսինքն 1725*։

էջ 1բ (այլ ձեռքով)

Ձեռքս փթի և հող դառնայ,
Գրեալ գիրըս անջինջ մընայ։
Ով հանդիպի, թող զայս կարդայ,
Մէ հայր մեղաց ասէ ըռմայ։
Ով որ ասէ տէր ողորմեայ,
Տէրն ողորմի ինձ և նորա։
Ձեռքս փտի և հող դառնայ,
Գրեալ գիրս անջինջ մընայ։

էջ 2ա (լուսանցքում ներքև)

Ես, մեղաւոր անարժան Անտոն սրբեղայս, հանեցի այս՝ Աղեքսանդրիա-մեկնեց ինձ յառաջն ի ձեռն քաջ րաբունապետին տէր Վասիլ վարդապետին, աստուած իւրեան երկար ժամանակ պատրաստէ. ամէն։

№ 29 [=584]

ԱՒԵՏԱՐԱՆ

Թերթերը՝ 316 (վերջին 315—316 մաքուր)։ Պրակները՝ 25. յուրաքանչյուրում 12 թերթ։ Մեծությունը՝ 13,5×10,5×6 (գրության 9,5×7)։ Նյութը՝ մագաղաթ։ Կազմը՝ տախտակ կարմիր թավշե կտորով պատած, մեջը կցված է մի թերթ թուղթ վրացերեն (անոտացիա) և վարդագույն մետաքսե կտորներ։ Ձեռագրի վիճակը՝ լավ պահպանված։ Վերջին թերթերի վերին ձախ անկյունը նորոգված։ Գրությունը՝ երկսյուն։ Տողերը՝ 20։ Գիրը՝ բոլորագիր։ Զարդագրությունը՝ խորաններ, զարդանկարներ լուսանցքներում, վերնագրերը և սկզբնատառերը կարմիր։ Գրիչը՝ Մկրտիչ քահանա։ Գրության տեղը՝ «Կիլիկիա» — «ի Թաղս Դուգուշի»։ Գրության ժամանակը՝ 1328 (ՉՀԷ)։ Պատվիրատուն (ստացողը)՝ Յովհաննէս եպիսկոպոս։

Հիշատակարաններ

էջ 240ա (միասյուն)

Փրկութիւն, թողութիւն, հանգիստ, ողորմութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ Մկրտիչ գրողի և ծնողաց մերոց, նաև զմեզ ի բարին Քրիստոս յիշողքդ տացէ տէր Յիսուս զբարին. ամէն։

էջ 312ա—312բ (սկիզբը և մեջը թերի)

...Գրեցաւ տառս աստուածայ[ին այս աւե]տարանս ձեռամբ սուտանուն քահանայի Մկրտչի, ի Թաղս Դուգուշի, ընդ հովանեաւ[1] սուրբ Գորգու և սուրբ Սարգսի, ի հայրապետութեան տեառն Յակոբա և ի թագաւորութեան Լեոնի։ Արդ, աղաչեմ զձեզ, դասք քահանայից, որք հանդիպիք այսմ աստուածախաւս կտակիս ընթեռնելով, կամ տեսանելով, կամ զաղափար գնելով, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զգրող սորա և ծընաւղսն իմ՝ զմայր, որ ի յաշխատելս առ աստուած փոխեցաւ, և զամենայն ազգատոհմ, և դուք յիշեալ լիջիք բարի աւրհնելոյն յաւէտ և յանվախճան յաւիտեանս, ամէն։

Իղձ բաղձանաց մարդկային բնութեան ի տեսակս զանազանս անջատեալ լինի յիմանալիս և ի զգալիս, յաստուածայինս և ի մարդկայինս, և այսորիկ

---

[1] Այստեղ և ստորև աւ-ը գրված է օ-ով։

դարձեալ զանազանք և պէսպէս շահաւորք և անաչանք երկարաձգեալք և համառօտեալք, վասն զի ըստ խորհրդականին...

...Սրբազան և պատուելի քահանիս Յովհաննէս... եռափափագ սիրով աստուածային շարժեալ ի բարեգործութեան...

...Այսպէս և սա, կամելով բարի յիշատակ ինքեանց թողուլ յերկրի և ծնողաց իւրեանց և համօրէն ազգա[յ]նոց կենդանեաց և հանգուցելոց, զմեծագոյն և զհաստրակաց ցանկալին ընտրեցին ստանալ, զաստուածապարգև գանձս զլուսաւ[ո]ր և բարձրագոյն բանս աւետարանութեան փրկչին մերոյ Յիսուսի և ընծա յիշատակի մշտնջենաւոր պարգևել սրբոյ եկեղեցոյ և մանկանց նորա, զի որ ընթերցին և ուստին, մեղաց թողութիւն հայցեն աստուծոյ Յովհաննիսի՝ բանի սպասաւորի և ծնողաց իւր։

էջ 313ա (միասյուն)

...Նաև զեղկելի ոգիս՝ զյետնեալս զՄկրտիչ գրագիրս, որ բազում աշխատանօք և ջանիւք գրեցի զսա ի սոոյզ և յընտիր աւրինակէ, որ ի Կիլիկեա յերկիրն արքայեղբայր անուն կոչեցեալ Յօհաննէս եպիսկոպոս, որ իւր ձեռօքն էր գրեալ լաւ և ընտիր աւրինակ, նայ եւ յայն որ գրեցի զսայ, և որ յիշէքդ ի բարի, նոյն և դուք յիշեալ լիջիք ի բարի յօրհնելոյն, այժմ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Եւ որ զմեզ և զմեր ծնաւղսն սրտիւ լի միոյ տէր ողորմայիւ յիշէ, նոյն ինքն յիշեալ [լիցի]։

Ի թվիս ՉՀԷ [=1328] ի կատարեալն մարտի ԺԵ[1]։

Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն ն ե ր

էջ 313բ

Զվերջին ստացող սուրբ աւետարանիս զՂազարս քահանայս, որ գնեաց զսայ ի հալալ ընչից իւրոց ի վայելումն անձին իւրոյ, յիշատակ ծնողաց իւրոց՝ հաւրն Առաքելին և մաւրն իմ Ռուլուին և ամենայն զարմից իմոց կենդանեաց և հանգուցելոց, և որք կարդայք կամ աւրինակէք, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զմեզ և զմեր ծնաւղսն, և յիշողքդ աւրհնեալ լիջիք յաստուծոյ, ամենայն սրբոց և ի մէնջ. ամէն։

Թ[վին] ՋԾԳ [=1504]։

էջ 314ա—բ

Ես, տէր Գրիգորս, և իմ եղբայր Աղաղաղս և մեր որդիքս ծախեցաք սուրբ աւետարանս վերայ Ճավի որդուցն Վարձիգուլին և ձեր աղբրացդ Սիմէոնին, Ամիրգուլին, Ղարիպշին և ձեր որդուցդ. առաք զգինն անպակաս, ոչով դավի չունի, ոչ հակառակ. մեր սրտի առատութեամբ ծախեցաք, այսոր վկայ է Մաթէոս էպիսկոպոս, տէր Անտոն, տէր Զաքարէ, տէր Գրիգոր, տէր Բարսեղ, Մլհամն, Շապանն։

Ես, Ճավի որդիքս Վարձիգուլս[2], Սիմէոն, Ամիրգուլս, Ղարիպշէս, Շզարամէլս[2] գնեցաք սուրբ աւետարանս յիշատակ / մեզ և ծնողաց մերոց հաւր մերոյ

[1] Այս հիշատակարանները մի փոքր համառոտած օգտագործել է Լ. Խ ա չ ի կ յ ա ն ը (տե՛ս «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Երևան, 1950, էջ 210)։

[2] Վրացական անուններ են։

Ճաւլին[1], մեր մաւրն Թա[նկ] խաթունին, մեր որդոցն Ոլանէսին, Հէրակլեսին, Ջանուն, Խոջադեղին, Քարիմադինին, Մկրտչին, Գրիգորին, Լամխազուլին[1], Գուլխազուլին[1]։ Ով որ կարդէք կամ աւրինակէք, յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ. ամէն։

Գրեցաւ ի թվականութեանս հայոց ՋԻԹ [=1480] Հոռի ԻԵ։

էջ 314բ.

Աստուած ողորմի մահտեսի Յակոբի հոգոյ և իւր կողակից Աստանգարի հոգոյն, որ սուրբ աւետարան կազմել տուաւ Խ. Գալարնկից (՞)։

№ 30 [=587]

## ՄԱՏՅԱՆ ՄԿՐՏՈՒԹՅԱՆ ԱԽԱԼՑԻԽԵՑԻ ՀԱՅ ԵՎ ՎՐԱՑ ԿԱԹՈԼԻԿՆԵՐԻ

Թերթեր՝ *86*։ Պրակներ՝ *22, յուրաքանչյուրը 4 թերթ*։ Մեծությունը՝ *22×15×1,5*։ Նյութը՝ *տարբեր որակի թուղթ*։ Կազմը՝ *կաշեպատ տախտակ*։ Ձեռագրի վիճակը՝ *բավարար*։ Գրությունը՝ *միասյուն*։ Տողերը՝ *տարբեր*։ Գիրը՝ *տարբեր, հայերեն և վրացերեն*։ Զարդագրություն *չկա, վերնագրերը կարմիր*։ Գրիչները՝ *տարբեր ժամանակների կաթոլիկ հոգևորականներ*։ Գրության տեղը՝ *Ախալցխա*։ Գրության ժամանակը՝ *հիմնականում 18-րդ դ. երկրորդ կես, մասամբ 19-րդ դ. (մեծ մասամբ 1762, 1763, 1764, 1771, 1773, 1779, 1780, 1781, 1782, 1783, 1789, 1790, 1791, 1792, այլև 1853, 1861 թթ.)*։

*Բ ո վ ա ն դ ա կ ո ւ թ յ ո ւ ն ը*

*էջ 2ա—11բ*

*Կարգ մկրտութեան տղոյն։*

*էջ 12ա—13ա*

*Օրհնութիւն պէսպէս իրաց։*

*էջ 14ա—15ա*

*Եկեղեցական հանդէս վասն կայսեր։*

*էջ 21ա*

*Գիրք մատենի սահմանեցեալ ըստ սովորութեան սրբոյ եկեղեցւոյ վասն երեխայից, որք նարապէս գան ի մկրտութիւն։*

*էջ 39ա*

*Նիկողայոսի ինքնակալ կայսերն մեր և ամենայն զօրաց նոցին։*

*էջ 40*

*Պատվերներ հոգեհանգստյան պատարագ մատուցանելու։ Մնացածը՝ մկրտվածների անունները, տեղը, ժամանակը, մկրտողը, հայերեն և վրացերեն։*

*էջ 61ա*

*1780 թ. ներքո հիշվում է տէր Գրիգոր Կրուխիճամիանթ Բարօի եկեղեցւոյս սրբոյն Յօհաննու Մկրտչին տեղւոյս Ախցխու են. նույնը վրացերեն՝*

---

[1] Վրացական անուններ են։

ტერ-გრიგოლმან კრუხიჯამიანთ, უფროსმან ვიქარმან ახალციხისა და მისი კათოლიკე თემისა, ბარძმან წმიად იოანე ნათლის მცემლის ეკლესიისა (տեր Գրիգոր Կրուխիջամիանց [այսինքն՝ Թխսկահանակեր], Ախալցիխեի և նրա կաթոլիկ թեմի ավագն ու հաջորդը, Հովհաննես Մկրտչի եկեղեցու միաբանը)։

№ 31 [=588]

ՏՈՆԱՑՈՅՑ ՀԱՅ ԿԱԹՈԼԻԿԱՑ

Թերթեր՝ 11×12։ Պրակներ՝ 2, մեկը մյուսի մեջ կարած։ Մեծությունը 21,5×16×0,5 (գրության 17,5×12,5 և 16,5×12)։ Նյութը՝ թուղթ սպիտակ (11 թերթ) և կապույտ (12 թերթ)։ Կազմը՝ կարտոնից, որի միջին կողմից փակցրած է լատիներեն տպագիր թերթեր 3 սյուն, ուր կարդացվում են Լատերանի եկեղեցական ժողովի [1512—1517 թթ.] և Հռոմի պապերի՝ Լևոն (Leo) 10-րդ [1513—1521], Ադրիանոս (Adrianos) 6-րդ [1522—1523] և Կղեմես (Clementos) 7-րդ [1523—1534] որոշումները։ Ձեռագրի վիճակը՝ թերի։ Գրությունը՝ տեղ-տեղ միասյուն, տեղ-տեղ երկսյուն։ Տողերը՝ տարբեր։ Գիրը՝ նոտրագիր։ Զարդագրություն չունի։ Գրիչը՝ անհայտ։ Գրության տեղը՝ անհայտ։ Գրության ժամանակը՝ մոտավորապես 18-րդ դ.։

*Բ ո վ ա ն դ ա կ ո ւ թ յ ո ւ ն ը*

*Տոնացույց՝ սկսած 21/11-ից (մինչ այդ թերի է) մինչև ամռան ամիսները։*

*Ուշագրություն են գրավում կաթոլիկ եկեղեցու հատուկ տոները, օր. «յետ տօնախմբութեան ամենասուրբ երրորդութեան հինգերորդ օր, որ է հինգշաբթի, տօն է ամենասուրբ մարմնոյ և արեան տեառն» (էջ 4ա)։*

*«Կանոն ամենասուրբ մարմնոյ և արեան տեառն օրհնութիւն, որ երգի որպէս մեծահրաշ այս խորհուրդ» (էջ 01ա—04բ)։*

*«Կանոն ի տօնի ամենասուրբ մարմնոյ և արեան» (4ա) են։*

*Հ ի շ ա տ ա կ ա գ ր ո ւ թ յ ո ւ ն*

*Վրացերեն*

„ეს წიგნი პეტრე მათეევიჩ ქაჩოევისაა“. *այսինքն՝ «Այս գիրքը Պետրոս Մաթվեևիչ Քաչոևինն է»։*

№ 32 [=589]

ՄԱՇՏՈՑ ՀԱՅ ԿԱԹՈԼԻԿԱՑ

Թերթեր՝ 280 (համարակալված)+7։ Պրակներ՝ 17 (համարակալված), յուրաքանչյուրը 8 թերթ։ Մեծությունը՝ 16×10,3×2,5 (գրության 12×8)։ Նյութը՝ թուղթ։ Կազմը՝ կաշեպատ ստվարաթուղթ՝ խաչով զարդարված։ Ձեռագրի վիճակը՝ բավարար։ Գրությունը՝ միասյուն։ Տողերը՝ 22։ Գիրը՝ նոտրագիր։ Զարդագրությունը՝ նկարներ՝ «մկրտության» (էջ 3բ) և համապատասխան տեքստերի դիմաց, ինչպիսիք են «յաղագս դրոշմի» (էջ 18բ), «կարգ օրհնելոյ զամուսնութիւն» (էջ 28բ), «կարգ օրհնելոյ զհիւանդն» (էջ 52բ)։ Վերնագրերը և սկզբնատառերը կարմիր։ Գրիչը՝ անհայտ։ Գրության տեղը՝ «յԱխլցխայ»։ Գրության ժամանակը՝ 1823 թ. 6/II։ Պատվիրատուն (ստացողը)՝ անհայտ։

*Տ ի տ ղ ո ս ա թ ե ր թ ը*

*Մաշտոց հայոց ուղղափառաց, հրամանաւ գերապայծառ և ամենապատուոյ տեառն Յովհաննու Տօբիայ Ակուշտինովիչի արհիեպիսկոպոսի հայոց, սրբագրեալ և կարգաւորեալ ի Լէօպօլիս, յամի տեառն 1728: Գրեցաւ ի տեառնէ Անտօն քահանայէ ի յԱխլցխայ յամի տեառն 1823 փետր. 6:*

*Բ ո վ ա ն դ ա կ ո ւ թ յ ո ւ ն ը*

*Սովորական՝ կաթոլիկ եկեղեցու ծիսակատարության կարգը, տեղ-տեղ վրացատառ լատիներեն աղոթքներով (էջ 1ա—2ա):*

№ 33 [=590]

ՏԱՂԱՐԱՆ

Թերթերը՝ *58:* Պրակները՝ *4 մաս տարբեր ծավալի:* Մեծությունը՝ *15×10×0,5 (գրության ա. 11×8, բ. 13×8, գ. 11,5 × 6,5, դ. 13,5 × 10):* Նյութը՝ *թուղթ:* Կազմը՝ *կարմիր կաշվով պատած ստվարաթուղթ:* Ձեռագրի վիճակը՝ *բավարար:* Գրությունը՝ *միասյուն:* Տողերը՝ *տարբեր:* Գիրը՝ *նոտրագիր:* Զարդագրություն *չունի:* Գրիչը՝ *Անտոն [վարդապետ, տաղասաց]:* Գրության տեղը՝ *անհայտ:* Գրության ժամանակը՝ *1698 (ՌՃԽԷ):* Պատվիրատուն *(ստացողը)*՝ *«Շուշան գեղեցիկ պատվական թագուհին»:*

*Բ ո վ ա ն դ ա կ ո ւ թ յ ո ւ ն ը*

*Տաղեր՝ բաժանված 4 մասի.*

*ա) մասը (էջ 1ա—6բ)՝ 4 տաղեր նվիրված Մարիամ Մագդաղենացուն, Ավետյաց տոնին, Հարության են, առանց հեղինակների անունը տալու:*

*բ) մասը (էջ 7ա—16բ)՝ 9 տաղ աստվածածնի, մարմնո, ապաշխարության, զղջման, Հովհան Կարապետի են, որոնցից առաջին երկուսը նվիրված աստվածածնին «ի Մելքոն քահանայէ Արզրումեցւոյ» ասացեալ:*

*գ) մասը (էջ 17ա—55բ)՝ այլևայլ տաղեր «Անտոն վարդապետէ ասացեալ», «Գալուստ վարդապետէ ասացեալ» և «Սուքիաս վարդապետէ ասացեալ»:*

*դ) մասը (էջ 56ա—57ա) այլ և այլ տաղեր:*

*Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն*

*էջ 55ա—բ*

*Թվին ՌՃԽԷ [=1698] ի սկի[զբ] ապրիլի էր զուսումն և ի հայրապետութեան տեառն սրբազան Նահապետ կաթուղիկոսի, ի վայելումն Շուշան գեղեցիկ պատվական թագուհոյն, յիշեցէք զանարժան Անտոնք, / որ և դուք յիշեալ լիջիք յաւետէն դրախտին աստծուն մերո, ամէն:*

*Այս գիրս չէյին թողուր, որ գրէյի. բան կու գրնէին իմ խաթուն ծառայ, իմ բեղ հրամանուցդ լայեղ գիր չէ, հըմա մեղադիր մի լինիր, և դու ողջ լեր ի պարծանս իմ:*

№ 34 [=622]

ՀԱՅ-ՎՐԱՑԵՐԵՆ ԲԱՌԱՐԱՆ

Թերթերը՝ *740 (744) էջ համարակալված, մեջումեջ հավելումներ առանձին թերթիկների վրա:* Մեծությունը՝ *21×17×3,5 (գրության 18×15,5):* Նյութը՝

թուղթ։ Կազմը՝ կարտոնի՝ կարմիր կաշվով պատած։ Ձեռագրի վիճակը՝ բավարար։ Գրությունը՝ երկսյուն, յուրաքանչյուրը հայերեն և վրացերեն տարբեր թանաքով գրված (սև և քիմիական)։ Տողերը՝ 30։ Գիրը՝ նոտրագիր և «մխեդրուլի»։ Զարդագրություն չունի։ Գրիչը՝ Պօղոս Թաթենով տիրացու, նույն Պողոս Թունաշվիլի քահանա։ Գրության տեղը՝ «ի գիւղ Ուտէ», այսինքն Ուդե, Ախալցխայի մոտ։ Գրության ժամանակը՝ 1899 թ. 25/II։ Պատվիրատուն՝ անհայտ, պատրաստված է եղել տպագրության և ցենզուրային ներկայացնելու համար։ Բովանդակությունը՝ հայ-վրացերեն բառարան, կազմված ըստ Մխիթար Սեբաստացու գրաբարի քերականության (1730) կցված բառացանկի (հմմ. № 35/627 և 40/639)։

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն
էջ 01.

Գրեալ է զայս բառարան ի ձեռն տիրացու Պօղոս Թաթենովին յամի փրկութեան մերոյ (1899) փէտրվարի 25, իսկ ի թուականութեան հայոց ՌՂԹ (*) ամի, ի գիւղ Ուտէ։ Նույնը վրացերեն

აღიწერა ესე ლექსიკონი დიაკვანი პავლე
თათუნოვის მიერ ცხოვრებისა ჩუენისა

էջ 740.
Ձ ե ռ ա գ ր ի վ ե ր ջ ո ւ մ։

დასასრული ეს ლექსიკონი ეკუთვნის მღ. პავლს თუნაშვილს, რომელიცა აღწერილია თვისი დიაკვნობის დროს საკუთარი ხელით.

այսինքն՝ Վախճան $18\frac{25}{II}99$։ Այս բառարանը պատկանում է Պողոս (Պավլե) քահանա Թունաշվիլուն, որն այս գրեց իր սեփական ձեռքով իր տիրացու եղած պահին։

էջ (743)

Երբ որ մայրը երկանքով
Յաշխարհ բերէ երեխայ,
Հայրը որդւոյն մի սրած
Պիտի տաղումն տայ ընծայ։

Հ ի շ ա տ ա կ ա գ ր ո ւ թ յ ո ւ ն ն ե ր
էջ 02, 740, [741], [742], [743], [744], այլև այլ բովանդակությամբ։

№ 35 [=627]

## ՀԱՅ-ՎՐԱՑԵՐԵՆ ԲԱՌԱՐԱՆ

Թերթերը՝ 182։ Պրակները՝ 12, յուրաքանչյուրում 16 թերթ (երբեմն պակաս)։ Մեծությունը՝ 16,5×11×2,5 (գրության 12,5×10,5)։ Նյութը՝ թուղթ։ Կազմը՝ կաշեպատ տախտակ՝ կեսը չկա։ Կազմի մյուս երեսին վրացերեն գիր։ Ձեռագրի վիճակը՝ բավարար։ Գրությունը՝ երկսյուն (հայերեն և վրացերեն)։ Տողերը՝ 22։ Գիրը՝ նոտրագիր և «մխեդրուլի»։ Զարդագրություն չունի։ Գրիչը՝ անհայտ։ Գրության տեղը՝ անհայտ։ Գրության ժամանակը՝ 18-րդ դ.։ Պատվի-

ռատուն *(ստացողը)՝ անհայտ։* Բովանդակությունը՝ *հայ-վրացերեն բառարան կազմված ըստ Մխիթար Սեբաստացու գրաբարի քերականության կցված բառացանկի (հմմ. № 34/622, 40/639)։*

*Տիտղոսաթերթը*

*էջ 1ա.*

*Գումարք անուանց և բայից և այլոց բառից, որք շարահիւսին կարգաւ այբուբենի կերպիւ ցանգի դիւրութիւն գտման այնց ամէնից, որք հոլովեցան և լծորդեցան և առ պահանջեցեալ խնդիրս իւրեանց բացորոշեցան յայամիկ Քերականութեան*[1]*։*

*Ձեռագիրը մեկն է հայ-վրացերեն բառարան պարունակող այն ձեռագրերից, որոնք կազմված են Մխիթար Սեբաստացու «Քերականութիւն գրաբարի լեզուի հայկազեան սեռի» (Վենետիկ, 1730) վերջում կցված (էջ 517—584) «ցանկի» բառապաշարի, որոշ հավելումներով։ Առաջին բառերն են՝ աբբայ, աբգիսս (նույնը սկզբնագրյուրում). վերջինը՝ ֆասոնգ, ֆիսբ, որ չկա սկզբնաղբյուրում։*

*Հիշատակագրություններ*

*էջ 1ա. վրացերեն.*

წიგნთაგანი მღვდელ სერაბინ მერაბაშვილისა,

*«Ի գրոց Սերովբե քահանա Մերաբաշվիլուն»։*

*էջ 1ա*

*Այս բառարանս Իդիտացի*[2] *Մուրադխան տիրացու Ակօբին է։*

№ 36 [=633]

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Թերթեր՝ *110։* Պրակներ՝ *խառն են, յուրաքանչյուրում 5 թերթ։* Մեծություն՝ *17×12,5×1,5 (գրության 13,5×9,5)։* Նյութը՝ *թուղթ։* Կազմը՝ *թղթից։* Ձեռագրի վիճակը՝ *թերի սկզբից և վերջից, թերթերը իրար մեջ խառն։* Գրությունը՝ *միասյուն։* Տողեր՝ *16։* Գիրը՝ *մանր նոտրագիր։* Զարդագրության *չունի, վերնագրերը և սկզբնատառերը կարմիր։* Գրիչը՝ *անհայտ։* Գրության տեղը՝ *անհայտ։* Գրության ժամանակը՝ *անորոշ։* Պատվիրատուն *(ստացողը)՝ անհայտ։*

*Բովանդակությունը*

*էջ 2բ. Թուղթ Պօղոսի առ Հռոմայեցիս։*

*էջ 15բ. առ Կորնթացիս։*

*էջ 36բ. առ Գաղատացիս։*

*էջ 44բ. առ Եփեսացիս։*

*էջ 53բ.*

*Նորին Գրիգորի [Տաթևացւոյն], աշակերտի եռամեծին Յոհաննու Որոտնեցւոյ, արարեալ համառօտ բանից ի մեկնութենէ սաղմոսին ասացելոյ, հօրն Դաւթի մարգարէի են։*

---

[1] *Բառացի կրկնություն է Մխիթար Սեբաստացու «Քերականութիւն գրաբարի լեզուի հայկազեան սեռի» բառացանկի վերնագրի (էջ 517)։*

[2] *Իդիտը գյուղ է Ախալցխեի մոտ։*

*Հիշատակագրություն (վրացերեն)*
*էջ 1ա*

წიგნთაგანი მღვდელ სერაბინ მერაბაშვილისა,
*«Ի գրոց Սերովբե քահանա Մերաբաշվիլու»:*

№ 37 [=634]

ԳԱՆՁԱՐԱՆ

Թերթեր՝ *106 էջ. սկսած 9-ից (առաջին 8 էջը պակասում է), վերջին 2 էջը՝ վրացերեն:* Պրակներ՝ *8 (համարակալված):* Մեծությունը՝ *16,5×11×1 (գրության 14×8,5):* Նյութը՝ *թուղթ:* Կազմը՝ *կարմիր կտորով պատած ստվարաթուղթ:* Ձեռագրի վիճակը՝ *թերի սկզբից:* Գրությունը՝ *միասյուն:* Տողերը՝ *26—30 (հայերեն), 24 (վրացերեն):* Գիրը՝ *նոտրագիր:* Զարդագրություն *չունի:* Գրիչը *անհայտ:* Գրության տեղը՝ *անհայտ:* Գրության ժամանակը՝ *մոտավորապես 18-րդ դ.:* Պատվիրատուն *(ստացողը)՝ անհայտ:*

*Հիշատակագրություններ*
*էջ 1ա. Վրացերեն.*
ტერ იოსებ ხუციოვისაგან შეწირული
ივლიტას წმიდა ჯვრის ეკლესიას.
*այսինքն՝ «Տեր Հովսեփ Խուցիևից նվիրաբերված է Իվլիտայի սուրբ խաչ եկեղեցուն»:*

*էջ 1ա. հայերեն.*
*Կազմեցաւ յինէն Յովսեփայ Խուցեանն:*

№ 38 [=635]

ՇԱՐԱԿՆՈՑ, ԱՒԵՏԱՐԱՆ

Թերթեր՝ *17 (սկիզբը և վերջը չկա):* Պրակներ՝ *2 (խառնված):* Մեծությունը՝ *17,5×11×0,2 (գրության 14×8):* Նյութը՝ *թուղթ:* Կազմը՝ *կաշեպատ ստվարաթուղթ:* Ձեռագրի վիճակը՝ *քայքայված և թերի:* Գրությունը՝ *միասյուն:* Տողերը՝ *16—17:* Գիրը՝ *նոտրագիր:* Զարդագրություն *չունի:* Գրիչը՝ *Յովանջան Նիգաշով(՞):* Գրության տեղը՝ *անհայտ:* Գրության ժամանակը՝ *1840 թ. 22/III:* Պատվիրատուն *(ստացողը)՝ անհայտ:*

*Հիշատակարան (վերջում)*
*Յամին տեառն 1840 մարտի 22-ին գըրավեցաւ այս գիր Նիգաշովին Յովանջան:*

№ 39 [=636]

ՄԱՇՏՈՑ ԿԱՄ ԾԻՍԱՐԱՆ ՀԱՅ ԵՒ ՎՐԱՑ ԿԱԹՈԼԻԿՆԵՐԻ

Թերթեր՝ *183 էջ համարակալված:* Պրակներ՝ *16, յուրաքանչյուրում 8 թերթ (խախտված):* Մեծությունը՝ *18×13×1,5 (գրության 14×10,5):* Նյութը՝ *թուղթ:* Կազմը՝ *ստվարաթուղթ:* Ձեռագրի վիճակը՝ *սկզբից թերի, պակասում է 4 թերթ: Էջերը խառնված են, օրինակ՝ 18—19 մեջ են կարված:* Գրու-

թյունը՝ *երկսյուն*: Տողերը՝ *25*: Գիրը՝ *նոտրագիր (հայերենը)*, *«մխեդրուլի» (վրացերենը)*: Զարդագրություն *չունի*: Գրիչը՝ *անհայտ*: Գրության տեղը՝ *անհայտ*: Գրության ժամանակը՝ *18-րդ դ.*: Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ*:

## № 40 [=639]

## ՀԱՅ-ՎՐԱՑԵՐԵՆ ԲԱՌԱՐԱՆ

Թերթերը՝ *93*: Պրակները՝ *11, յուրաքանչյուրում 8 թերթ*: Մեծությունը՝ *21,5×17,5×1,5 (գրության 20×15)*: Նյութը՝ *թուղթ*: Կազմը՝ *ստվարաթուղթ*: Վիճակը՝ *սկիզբը թերի*: Գրությունը՝ *երկսյուն (հայերեն և վրացերեն)*: Տողերը՝ *20*: Գիրը՝ *նոտրագիր և «մխեդրուլի»*: Զարդագրություն *չունի*: Գրիչը՝ *անհայտ*: Գրության տեղը՝ *անհայտ*: Գրության ժամանակը՝ *անորոշ*: Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ*: Բովանդակությունը՝ *հայ-վրացերեն բառարան, կազմված ըստ Մխիթար Սեբաստացու գրաբարի քերականությանը կցված բառացանկի (հմմ. № 34/622, 35/627): Բառարանը սկսվում է «անկ, անկողին, անկորուստ» թերի ընթերցվածքով, ապա «բաղնատէր* —აბანოს პატრონი»:

*Վերջին բառն է «ֆակել*— დაყრა»

*Հիշատակագրություն (վրացերեն)*

*կազմի ներսից*

მოიხსენე, უფალო, იოსები ფურცუხოვი,

*այսինքն՝ «Հիշյա, տէր, Հովսեփ Փորսուղովին»*:

## № 41 [=640]

## ԳԱՆՁ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Թերթերը՝ *01+588+[3] (համարակալված)*: Պրակները՝ *18 (ոչ լրիվ) յուրաքանչյուրում 20 թերթ*: Մեծությունը՝ *21×15,5×4 (գրության 17×11)*: Նյութը՝ *թուղթ*: Կազմը՝ *տախտակ կաշեպատ*: Ձեռագրի վիճակը՝ *բավարար*: Գրությունը՝ *միասյուն*: Տողերը՝ *35*: Գիրը՝ *նոտրագիր*: Զարդագրությունը՝ *վերնագրերը և սկզբնատառերը կարմիր*: Գրիչը՝ *Վարդան դպիր*: Գրության տեղը՝ *Կ. Պոլիս, Պէկօղլու թաղ*: Գրության ժամանակը՝ *1749 թ. հոկտ.*: Պատվիրատուն *(ստացողը)*՝ *Նղիա վարդապետ*:

*Հիշատակարաններ*
*էջ 576—577.*

*...Ի հնազանդութիւն հրամանաց առաջնորդիս իմոյ Մաթէոսին, այսր սպասաւորութեամբ մերոյ քարոզողացն կարգիս մի սէր եղբայրակցութեան ուսումնասիրաց, ի թվին մարմնեղեան Բանին 1664 ՌՈԿԴ [=1664] մայիսի ԺԶ, ես, աններհուն Սեբաստիանոս աստուածաբան վարդապետ / կարգէն քարոզողաց, ազգաւ Ալամանցի, ի քաղաքէն Պամբրգայ, որ ի գաւառին Ֆրանկոնեայ, ամուլ մտօք, ցամաք լեզուաւ, անհմուտ ձեռօք գծիցս այս, որ կոչի Գանձ վարդապետութեան Քրիստոսի, ի բարբառոյ ֆռանկաց փոխակերպեցի ի հայս, ի գեղաքաղաքին Ապարանէր, ի վանս ամենայն սրբոց: Արդ դու, ով մարդասէր ըն-*

թերցօղ, զոր ինչ նուաղութեամբ գտցես, ինձ մի մեղադիր լեր, այլ զամլութիւն մտաց վասն հարկաւորութեան նիւթոյն, զղարիպութիւն լեզուի վասն հրամանին առաջնորդին զանհմտութիւն ձեռաց վասն ուղիղ դիտաւորութեան իմոյ անմեղադրելի արա. և զոր ինչ օգտակար պատահեսցի ի բարութենդ քոյին և ընկերիդ՝ ընկալ, և զիս յաղօթս քո յիշեա, ամէն։

էջ 589

Ով, անցաւորք մարդ այս ճանապարհի, ես մտանելոց եմ ներքոյ հողի, ի յերկրէն Շապին-Ղարահիսարու, ծնեալ իմ ի գիւղէն Թամզարու, որ եմ որդի Գրիգորի, իսկ անուամբ Վարդան կոչի, որ ես, անարժան ընչին դպիրս վերոյ ասացեալ, յոյժ աշխատութեամբ ցանկանալով ցանկացա, օրինակելոյ օրինակեցի ձեռամբ իմով և աշակերտովքս և տառցս այս զանձս, և ի գործածելն իմ տեսի, որ է շահաւէտ զայս փրկութեան հոգւոյ գործածողին, որ և ընթեռնանիլն յաւամ որ է զէն փրկութեան, յետո հանդերձ ի շահ և ի օգուտ ուղղափառ ազգին մեր Հայոց և ճշմարտասիրաց, ի փառս ամենապատուական և անգին արեան փրկչին և մօր նորին միշտ կուսին Մարիամու և ընդհանրական և հոռմէական սուրբ հարսին նորա՝ եկեղեցւոյն, յամի տեառն 1749 և հոկտեմբերի, ի թագաւորանիստ մայրաքաղաքն Կոստանդնուպօլիս, ի թաղն Պէկօղլու կոչեցեալ։

Վերապատուելի և յերյարգելի, ի ծովապարշի (՞) ի ջրրմըղախաղ տիեզերահռչակ աշխարհախումբ լի աստուածային շնորհիւ Եղիայ վարդապետին, ձեռամբ աշակերտին վերոյ ասացեալ։ Այս մատներս դառնալոց է հող, փոքր ինչ գիրս մնա յիշատակող։ Ով որ կարդայ և շահի իղձս հոգևորս, յիշեսցէ զիս և ծնօղս իմ միով Հայր մերիւ, և դուք յիշեալ լիցիք ի դպրութեան կենաց, ամէն։

էջ 590—591

...Ես անարժան և անպիտան, խեղճ, ողորմելի և բթամիտ, ընչին դպիր Վարդանս այս երկու խորհրդատետրքս առաջին մէկ քանի գրեանք օրինակեցի ես, կամ աշակերտովքս, որ է գրքերն այս։

Այս գրքէս յետոյ գրված գրքերն այս են.

Լօճիքա, որ և կոչի տրամաբանութիւն. Գիրք, որ կոչի սանդուղք մարխակական (՞). Քերականութիւն լէհացի Ստեփան վարդապետեան. Գիրք, որ ի վերայ սուրբ սատրճանաց. Պարզապանութիւն, Համառօտութիւն. Կտակք ի վերայ սուրբ չարչարանացն Քրիստոսի. Մաշտոց հայոց. Գիրք քահանայից զարհուրելի. Գիրք անմեղ մանկանց. Գիրք ի վերայ ծննդեան Քրիստոսի. Գիրք վիճաբանութեան և ասաց լրման լուսնոյ. Գիրք Պէնետիկոս փափին. Պատմութիւն. Գիրք կերակուր քահանայից. Գիրք վիճաբանութեան ի վերայ ծննդեան Քրիստոսի. Քարոզներ. Յիշատակարան. Քրիստոնական վարուց գիրք. մանաւանդ Ակումբ քրիստոնէական վարդապետութեան. Գիրք զանազան աղօթից. Կերպկերպ վիճաբանութիւնք. Գիրք մեկնութեան Կղէմէսի, առաջին հատոր...

Ամենայն օր և որքան ասես 300 ամաց ներողութիւն տացես:... Եղբայրք և քորք, երկիրպագանելով աղաչակեմք և աղավինիմք ասելով, թէ հոգևոր և թէ մարմնաւոր վտանգի ի փորձութենէ պահէ զիս և մանաւանդ ի հոգեվարութեան ի ժամանակս հոգիս ի ձեռս քո աւանդեմ. ամէն։

Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն ն ե ր

կազմի վրա. 1858, 1880

կազմի մյուս երեսին վրացերեն և հայերեն

ա. (վրացերեն)

„ხუციანთ ტერ... 1829 მაის
უფალი ტერ იოსებ ხუციანოვისაგან ვისყიდე
ტერ სტეფან გოზალოვმან 1858 წელს ივნისის 23",

այսինքն

Խուցյան տեր... 1829 թ. մայիս.

Տեր հայր Հովսեփ Խուցյանովից գնեցի տեր Ստեփան Գոզալովս 1858 թվականին։

բ. (հայերեն) «Վայելումն է տէր Ստեփան Գօզալեանին»։

№ 42 [=641]

Ք Ա Ր Ո Զ Գ Ի Ր Ք

Թերթեր՝ 33։ Պրակներ՝ 4 ոչ լրիվ, այսինքն սկիզբը թերի, մնացածն էլ պակասավոր, այսպես, օրինակ, Դ պրակից 10 թերթ, Է պրակից 12 թերթ, Ը պրակից 2 թերթ, Ժ պրակից 9 թերթ, ընդամենը 33։ Մեծություն՝ 24×17,5×0,5 (գրության 17×11)։ Նյութը՝ թուղթ։ Կազմ չունի։ Ձեռագրի վիճակը՝ քայքայված և թերի սկզբից ու վերջից։ Գրություն՝ երկսյուն։ Տողեր՝ 30—31։ Գիր՝ բոլորագիր։ Զարդագրություն՝ վերնագրերը և սկզբնատառերը կարմիր։ Գրիչը՝ անհայտ։ Գրության տեղը՝ անհայտ։ Գրության ժամանակը՝ անորոշ։ Պատվիրատուն (ստացողը)՝ անհայտ։ Բովանդակություն՝ քարոզներ եկեղեցական տոների առթիվ «յաւուրս պատշաճի», ի միջի այլոց և Գր. Լուսավորչի հիշատակի հետ կապված օրերի և տոների շուրջը նաև «Շողակաթին, վասն իջման բանին աստուծոյ»։

№ 43 [=642]

Վ Ի Ճ Ա Բ Ա Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն
(Կաթոլիկական)

Թերթեր՝ 38, որոնցից առաջին երկուսը մաքուր, 37—38 նույնպես մաքուր։ Պրակներ՝ 4, յուրաքանչյուրում 8 թերթ։ Մեծություն՝ 19×14×1 (գրության 14,5×10,5)։ Նյութը՝ թուղթ։ Կազմը՝ ստվարաթուղթ։ Ձեռագրի վիճակը՝ վնասված, սկզբից թերի (4 թերթ է պակասում)։ Գրությունը՝ միասյուն։ Տողեր՝ 24։ Գիր՝ նոտրագիր։ Զարդագրություն չունի։ Գրիչը՝ Տիրան։ Գրության տեղը՝ «Ընդ հովանեաւ Կարապետոս, որ ի նահանգն Կեսարու»։ Գրության ժամանակը՝ 1768։ Պատվիրատուն (ստացողը)՝ անհայտ։

Տ ի տ ղ ո ս ա թ ե ր թ ը

էջ 4ա.

Վիճաբանութիւն ի վերայ բանին, թէ Քրիստոս կարէ անօթ աստուածային զգրեալ ի բանէ պարտէզ գրքականն, տպեալ ի Վէնետիկ, յորում գրի այսպէս. Ողջոյն քեզ, ով տէր իմ Յիսուս Քրիստոս, ճառագայթ հօր, դուռն երկնից, հաց կենդանի, ծնունդ կուսին Մարիամու և անօթ աստուածային ի յաղօթս նախ

քան զգանն աստուծոյ։ Նախ յայսմ տետրակի արձանագրին բանք տետրակի հակառակորդաց և ապա լուծումն բանից նոցա արարեալ փիլիսոփայական մեթոդոսիւ յումեմնէ տրուպ բանասիրէ, որոյ անունն ի վերջոյ տետրակի համեբաբանեալ լինի խորհրդաւոր ոտանաւորօք։

Գրեալ ի Կոստանդինուպոլիս մայրաքաղաքն մեծ, յամի տեառն 1757 դեկտեմբերի 25, ի փառս աստուծոյ և ի պատիւ սրբուհւոյ աստուածածնին։

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն

էջ 36ա

Թուին հազար երկհարիւրի
Եօթ ու տասան բառ այս հաշուի.
Նովաւ լիցի թիւ հաւատի
Յարեթական մեր տոմարի։
Ընդ հովանեաւ Կարապետու,
Որ ի նահանգն Կեսարու,
Նոյն ինքն լինէր ինձ ձեռնտու
Մինչ անցանէ կեանքն հասու։
Զայնիկըս նուաստ՝
Տիրան բարեպաստ՝
Գրեցի զայս սատ
Եղբարցս իմաստ·

№ 44 [=675]

ԳԱՆՁԱՐԱՆ

Թերթերը՝ *անորոշ*։ Պրակները՝ *անորոշ*։ Մեծությունը՝ *26×17,5×11 (գրության 19×11)*։ Նյութը՝ *հին թուղթ*։ Կազմ *չունի*։ Ձեռագրի վիճակը՝ *վերին աստիճանի քայքայված, այրված, վնասված և փչացած, թերի սկզբից և վերջից (կրակից ազատված)*։ Գրությունը՝ *միասյուն*։ Տողերը՝ *21*։ Գիրը՝ *բոլորգիր*։ Զարդագրությունը՝ *վերնագրերը և սկզբնատառերը կարմիր*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *անորոշ (14—15-րդ դդ.)*։ Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ*։

№ 45 [=676]

ՏՕՆԱՑՈՅՑ

Թերթերը՝ *199*։ Պրակները՝ *18, յուրաքանչյուրում 12 թերթ (երբեմն պակաս, երբեմն 14)*։ Մեծությունը՝ *10×7,5×3,5 (գրության 7,5×5,5)*։ Նյութը՝ *թուղթ*։ Կազմը՝ *կաշեպատ տախտակ, ներսից կտոր*։ Ձեռագրի վիճակը՝ *մասամբ վնասված*։ Գրությունը՝ *միասյուն*։ Տողերը՝ *16*։ Գիրը՝ *բոլորգիր*։ Զարդագրությունը՝ *վերնագրերը և սկզբնատառերը կարմիր*։ Գրիչը՝ *անհայտ*։ Գրության տեղը՝ *անհայտ*։ Գրության ժամանակը՝ *անորոշ*։ Պատվիրատուն *(ստացողը)*՝ *անհայտ*։

№ 46 [=677]

ԱՂՕԹԱԳԻՐՔ

Թերթեր՝ 106 էջ (համարակալված)։ Պրակներ՝ 14 ոչ լրիվ, յուրաքանչյուրում 8 թերթ։ Մեծությունը՝ 16×10×1 (գրության 14,5×8)։ Նյութը՝ թուղթ։ Կազմը՝ ստվարաթուղթ։ Ձեռագրի վիճակը՝ վնասված։ Գրությունը՝ միասյուն։ Տողերը՝ 22—24։ Գիրը՝ նոտրագիր։ Զարդագրություն՝ 98 էջում դարչնագույն ներկով բուսավոր մարգիկ։ Ձեռագրի վերջում (105 էջ) խաչ, որի շուրջը արև, լուսին, աղավնի, խաչ և զույգ թռչուններ։ Խաչի մեջ գրություն. «Յս Քս տր մեր. ամէն»։ Գրիչը՝ Մօսէս։ Գրության տեղը՝ անհայտ։ Գրության ժամանակը՝ 18-րդ դար։ Պատվիրատուն (ստացողը)՝ անհայտ։ Բովանդակությունը՝ աղոթքներ Եփրեմ Ասորու, Գրիգոր Լուսավորչի, Աթանասի, Գրիգոր Աստվածաբանի, Գրիգոր Նարեկացու։

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն

էջ 106

Արդ, ով աստուածախօս աղօթողք, յիշեսջիք յարժանհաս մախթանս ձեր մահտեսի Յակոբին և որդի նորա՝ բազմամեղ դրչիս...[1] Մօսէսին, յիշեալ լիցիք յաստուծոյ մերմէ, ամէն։

№ 47 [=678]

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Թերթեր՝ 218 էջ համարակալված։ Պրակներ՝ 26, յուրաքանչյուրում 8 թերթ։ Մեծությունը՝ 15×9,5×1,5 (գրության 13,5×8)։ Նյութը՝ թուղթ։ Կազմը՝ ստվարաթուղթ։ Ձեռագրի վիճակը՝ բավարար։ Գրությունը՝ միասյուն։ Տողերը՝ 22—24։ Գիրը՝ բոլորագիր։ Զարդագրություն՝ մի նկար 2-րդ էջում տպագիր գրքից՝ «Նկար մանկունքն ի բաց հնոցին և հրեշտակ տեառն ի մէջ հնոցին» բնաբանով, էջ 175 այբուբենը (ա—ք) հնգական կարգով ×7=35 և մի էլ, Ք, էջ 196—203 համաստեղությունների դասակարգումը. 216 էջ «ցանկի» տակ վեղարավորներ թվով 4—5։ Գրիչը՝ Մովսէս մահտեսի։ Գրության տեղը՝ Շուշի։ Գրության ժամանակը՝ 1840 թ.։ Պատվիրատուն (ստացողը)՝ անհայտ։

Տ ի տ ղ ո ս ա թ ե ր թ ը

էջ 1

Գիրք պատմութեան վասն պղնձէ քաղաքին և Հարցմունք աղջկան և մանկան և Պատմութիւն Խիկարայ և Փահլուլ թագաւորին և Խրատք առաջնոց ասացեալ և այլ, որ է օրինակ աշխար[հ]իս։ Ի հայրապետութեան տեառն Յոհաննու Կարբեցւոյն սրբազան կաթուղիկոսի ամենայն հայոց սրբոյ աթոռոյն էջմիածնի և ի յամի փրկչին 1840 թվին և հայոց ՌՄՁԹ. գրեցաւ ի Շուշի։

Բ ո վ ա ն դ ա կ ո ւ թ յ ո ւ ն

էջ 3—53.

Պատմութիւն վասն Պղնձէ քաղաքին, որ է օրինակ աշխար[հ]իս։

---

[1] Այստեղ մի բառ ջնջված է։

էջ 54—78

Պատմութիւն աղջկան և մանկան և հարցմունք նոցա ընդ միմեանս։

էջ 79—112

Խրատք պիտանիք և օգտակարք, զոր ասացեալ է Խիկարայ իմաստնոյ։

էջ 112—121

Խրատք... օգտակարք արարեալ Զարմաղան Թագաւորին, որ Նուշրաւան ասեն։

էջ 121—135

Վարք և պատմութիւն Աղեքսանդրի ճգնաւորին։

էջ 135—172

Պատմութիւն տէր Յուսկան և որդւոյ նորին Սոփեանոսի։

էջ 172—195

Բանք պիտանիք և օգտակարք ասացեալ յառաջնոց։

էջ 196—203

[Համառոտութիւնների դասակարգումը]։

էջ 204—215

Պատմութիւն յաղագս Փահլուլ Թագաւորին։

էջ 216

Յանկ։

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն

էջ 217

Յիշատակարան գրչի.

Շնորհիւ և ողորմութեամբն աստուծոյ ամենակալին և ամենազօրին հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, և բարեխօսութեամբ արագահաս վկային սրբոյ մեծին Մինասայ յանկ ելեալ աւարտեցաւ սպուռն պատմութեան գրքոյս, որ կոչի Պղնձէ քաղաք։

Արդ՝ ով բարեմիտ ընթերցողք սորին, ի հանդիպելն ձերայնոյ գրքանս, յիշեսջիք ի Քրիստոս յոյսն մեր բնաւիցս... Մովսիսին որ գրեցաւ զգիրս, յիշեսջիք զործարանիս... Մօվսէսի մահտեսի, Յակոբին իմ հայր, և դուք յիշեալ լինիջիք յաստուծոյ մերմէ. ամէն։

№ 48 [=700]

ԱՂՕԹԱՄԱՏՈՅՑ (ԳԱՆՁԱՐԱՆ—ՉՐՕՍԱՐԱՆ)

Թերթեր՝ *288 էջ համարակալված, 32 էջից հետո 7 էջ մաքուր, տեղ-տեղ էջերը խառնված։* Պրակներ՝ *22, յուրաքանչյուրում 8 թերթ։* Մեծություն՝ *22×16,5×2,5 (գրություն 17,5×13,5)։* Նյութը՝ *թուղթ։* Կազմ *չունի։* Ձեռագրի վիճակը՝ *բավարար։* Գրությունը՝ *միասյուն։* Տողեր՝ *17—20։* Գիրը՝ *նոտրագիր։* Զարդագրություն *չունի։* Գրիչը՝ *անհայտ։* Գրության տեղը՝ *Նոր Նախիջևան։*

Գրության ժամանակը՝ 1790 թ. 4/X։ Պատվիրատուն (ստացողը)՝ Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեան։

Տ ի տ ղ ո ս ա թ ե ր թ ը
էջ 1ա

Գանձարան ախտականութեան աղօթամատոյց և Զբօսարան հոգւոց ի ժամ անմահ պարինն՝ անարիւն զենման և ի յառանձնութեան՝ ջերմեռանդ քրիստոնէից կենսաբեր խոկմունք և երանական զմայլեցուցիչք... Գրքոյկ, որ կոչի աղօթամատոյց, արտագրեալ երանելի հօրն մերոյ Աղէքսանդր կաթողիկոսի Ջուղայեցւոյ, ի պէտս լուսաւորչածին հասարակ ժողովրդեան, յորժամ սուրբ պատարագի խորհրդական արարողութիւնն սկսանի, ի յիշատակ չարչարանաց այրականին Յիսուսի և ի քաւութիւն մեղաց մերոց, յամի տեառն 1687։

Տպագրեալ ի հայրապետութեան լուսանկար մօրն մերոյ սրբոյ [աթոռ]ոյն էջմիածնի՝ սրբազան Ղուկասու սրբազնասուրբ կաթողիկոսի ամենայն հայոց, հրամանաւ և ծախիւք սուրբ աթոռոյն էջմիածնի ծայրագոյն նուիրակի և Ռուսաց երկրի ամենայն ազգիս հայոց առաքելաշաւիղ առաջնորդի՝ տեառն Յովսէփայ սրբազան արքեպիսկոպոսի Սանահնեցւոյ Արղութեանց, յամի տեառն 1790, ի նորին բարձր սրբազանութեան, ընդ հովանեաւ երկնահանգէտ սուրբ խաչի վանիցն, որ ի Նոր-Նախիջևան[1]։

Հ ի շ ա տ ա կ ա գ ր ու թ յ ու ն
էջ 84

Վրացերեն լեզվով հայատառ՝

«Վիշմնի էշմակի», այսինքն՝ «Հրաժարիմք ի սատանայէ» են։

էջ 98 և հետո Մոլլա Նար-էդդինի առակները։

№ 49 [=705]

ԳԷՈՐԳ ՄԵԼՔԻՍԵԴԵԿԵԱՆ ԽՈՒԲՈՎԻ «ԳԱՀԱԶԱՆԱԳԻՐՔԸ»

Թերթեր՝ 99, որոնցից 98—99 մաքուր։ Պրակներ՝ 10, յուրաքանչյուրում 10 թերթ։ Մեծությունը՝ 37×22,5×2 (գրության 34×19,5)։ Նյութը՝ թուղթ։ Կազմը՝ ստվարաթուղթ։ Վիճակը՝ լավ։ Գրությունը՝ միասյուն։ Տողեր՝ 30։ Գիրը՝ նոտրագիր։ Զարդագրություն չունի։ Գրիչը՝ Գէորգ Մելքիսեդեկեան Խուբով, Սիմէոն կաթողիկոսի եղբօրորդին։ Գրության տեղը՝ Հյուսիսային Կովկաս՝ Մոզդոկ կամ Ղզլար։ Գրության ժամանակը՝ 1814 թ.։ Պատվիրատուն (ստացողը)՝ Եփրեմ կաթողիկոս։

Տիտղոսաթերթը (նույնը և հիշատակարան)՝

Գաւազանագիրք, որ է Ցուցակ ազգաբանութեան թագաւորացն Հայոց և նախարարաց և բոլոր պայազատ սպայպետաց և այլոց, սկսեալ ի Յաբէթայ, որդւոյ Նոյի, երկրորդ հօրն աշխարհի, ի 2263 թուականէ աշխարհի մինչև ի 1184 թիւ փրկչին, որ պարունակէ զժամանակս իբրև 4750 ամաց, որոց ամենայնից յորմէ՞ ազգէ և յորո՞յ շառաւիղէ յառաջանալ և յորպի՞սի կառավարու-

---

[1] Տպագիր օրինակի տիտղոսաթերթը տե՛ս Գ. Զարբհանալեան, Հայկական մատենագիտութիւն, Վենետիկ, 1883, էջ 24։

[2] Մանրամասնությունները՝ Լ. Մելիքսեթ-Բեկ, Գէորգ Մելքիսեդեկյան Խուբով (Նյութեր և նոթեր), «Տեղեկագիր» Հայկական ՍՍՌ ԳԱ, 1950, № 2, էջ 55—84։

թեան և իշխանութեան դոլ և յորո՞ւմ ամի և յո՞ր ժամանակի և ցո՞րքան տևին իշխանութեան։ Եւ ես զի՞նչ և զո՞րպիսի գործել և ո՞րով հաւատով կենցաղավարել իւրաքանչիւրոցն համառօտակի արձանացուցեալ։ Նաև ո՞րքան կայսերք Հայկազանց և որքա՞ն նախարարութիւնք լեալ են և յո՞րոց սերեալ և անուանեալն, և զկարգ կայսերաց և թագաւորաց և այլոցն ուրոյն ուրոյն հատկացուցեալ և եօթնկարգեան բոլորակս ըստ կարգի ատրիճանացն դասակարգեալ և այլ այսօրինակ քաջայաղթ ախոյեանց հայկազանց և այլազանց զանուանս ըստ մասին և զարարս ոմանց քաջարեաց՝ կարճառօտութեամբք յիշմամբ շարակարգեալ ցուցանէ։

Աշխատասիրութեամբ հարազատորին հայկազեան, հայրենասէր, հաւատարիմ և փոյթեռանդուն, սրտացաւ, ջանադիր, մեղուաներկ Գէորգ Մելքիսեդեկեան խաւրով Խաղբակեանց յօգնաշխատ իշխանի, եղբօրորդւոյ տեառն Սիմէօնի մեծի, ամենայն հայոց գերընտիր և բազմերախտ կաթողիկոսի Երևանցւոյ, ի զբօսանս ազգասիրաց։

Ի հայրապետութեանս (և բարձրագոյն հրամանաւ իսկ) լուսանկար աթոռոյն էջմիածնի՝ տեառն Եփրեմայ արժանընտիր և կայսերապատիւ սրբազնասուրբ կաթողիկոսի ամենայն հայոց և հոգեծնի մեծին Սիմէօնիս։

Բ ո վ ա ն դ ա կ ո ւ թ յ ո ւ ն ը

էջ 1ա—3բ

Առաջաբան

էջ 4ա—6բ

Մաքուր թերթեր։

էջ 7ա—53ա

Հայաստանի ժամանակագրությունը սկսած «Նոյից» մինչև Կիլիկիայի թագավորության անկումը։

էջ 53ա—56բ

Նույնը՝ Կիլիկիայի անկումից հետո, մելիքների պատմությունը, Դավիթբեկի էպոպեան են։

էջ 57ա—58բ

Ուրացողների և դավաճանների ցուցակը։

էջ 59ա—60բ

Ծանոթագրություններ։

էջ 61ա—65բ

Հայ և օտար գրողների հիշատակագրությունը։

էջ 65բ—66բ

«Սակս կայսերական կոչմանն»։

էջ 67ա—90բ

Ցանկ («Առ ի դիւրաւ գտանելոյ զանուանս իւրաքանչիւրոցն այբուբենական ցանկով նշանակեցաք զամենայն կարգս և յառաջիկայդ»)։

Բացի դրանից, ձեռագրի այլևայլ տեղերում Գ. Խուբովը մացրել է 30-ի չափ տաղեր նվիրված Հայոց նահապետներին, իշխաններին և թագավորներին,

Հ ի շ ա տ ա կ ա գ ր ո ւ թ յ ո ւ ն ն ե ր
էջ 56ա

1814 [թվական]. Գէորգ Մելքիսեդեկեան Խուբով Խաղբակեան Արշակունի (*), որ սիրատաշոր ջանիւ, բայց սգապատեալ սրտիւ, լալագին աչօք, թախծեալ անձամբ և ցաւալի մատամբք գրեաց զայս յիշատակագրութիւնս զիւցազնացեալ տիրապետողացն Հայկազանց, որք իշխին և ոչ ևս երևին, ոչ թէ տեղիք միայն, այլ մինչ յիշատակք ևս այնպիսեաց վեհանձանց են։

էջ 56ա.

Լալով, սգալով և արտասուօք քան մելանիս գրեա Գէորգ,
Գրեա, ողբա, մի զարհուրիր, զի սգալի է դարս այս, Գէորգ,
Յայնքան արեաց և յարարմանցն զո՞րն և կամ զի՞նչ գտանես,
Գէորգ,
Զի ինքեանք ցնորք և փառքն շատաց, քան պշուք անցին, Գէորգ։

№ 50 [=715]

## ԹՈՒՐՔԵՐԷՆ ԱՍՈՂ ՀԱՅ ԱՇՈՒՂՆԵՐ

Թերթեր՝ 78։ Պրակներ՝ սովորական տետր։ Մեծություն՝ 21×14,5×1։ Նյութը՝ թուղթ վանդակավոր գծագրությամբ։ Կազմ չունի։ Ձեռագրի վիճակը՝ բավարար, տիտղոսաթերթը պոկված։ Գրություն՝ միասյուն։ Գիրը՝ նոտրագիր (Աբեղյանական ուղղագրությամբ)։ Զարդագրություն չունի։ Գրիչը՝ Գ[եղամ] Թ[արվերդյան] (էջ 61բ)։ Գրության ժամանակը՝ 1921—1940 թթ. (Աբեղյանական ուղղագրությամբ)։ Պատվիրատուն (ստացողը)՝ պատրաստվել է տպագրության համար։ Բովանդակությունը՝ 90-ի չափ հայ աշուղների համառոտ կենսագրություններ և նրանց ադրբեջաներեն-թուրքերեն երգերը, թվով 152։

Ըստ ձեռագրի, «Թուրքերեն ասող հայ աշուղները» հետևյալ դեմքերն են՝ այբբենական կարգով.

ԱԼԼԱՀՎԵՐԴԻ. Ծնվել է Էջմիածնի գավառի Օշական գյուղում 1827 թ., մեռել է նույն տեղում 1881 թ., 5 երգ (էջ 1ա—2ա)։

ԱԹԵՇ. Ծնվել է Բաշ-Գյառնի գյուղում. այլ բան հայտնի չէ. 1 երգ (2բ)։

ԱՄԻՐ-ՕՂԼԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 2 երգ (3ա—բ).

ԱՍՄԱՐ. Ծնվել է Օրդուբաթում, 1874 թ. առևտրականի աղջիկ է եղել. ասել է միշտ թուրքերեն. Հետագայում ամուսնու հետ գաղթել են Բաթում, ուր և մեռել է 1906 թ. 1 երգ (4ա)։

ԱՐԱԶԼԻ-ՍԱՐԳԻՍ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (4բ)։

ԲԱՆԳԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 2 երգ (5ա—բ)։

ԲԱԴԱԼ. Ծնվել է Հին Նախիջևանի Նորս գյուղում 1810 թ. կույր է եղել. Հետագայում տեղափոխվել և ապրել է Շուշի, մեռել է 1850 թ. 1 երգ [տպ. Գ. Լևոնյան, «Հայ աշուղներ»] (6ա)։

ԲԱԴԱԼ (Գյամրեզցի). Ծնվել է Երևանի գավառի Կոտայք շրջանի Գյամրեզ գյուղում 1830, մեռել է 1882 թ. 1 երգ (6բ)։

ԲԱՂԴԱՍԱՐ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (7ա)։

ԲԱԶԱԶ-ՕՂԼԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (7ա):

ԲԱԴՐ-ԱԼԼԱՀՎԵՐԴԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (8ա):

ԲՈՒԴԱՂ-ՕՂԼԱՆ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (8բ):

ԳՅԱՐԴԻՇ. Իսկական անունը Ենոք. ծնվել է Երևանի գավառի Ղամարլվի շրջանի Թափա-բաշ գյուղում 1857 թ., կույր է եղել. մեռել է 1910 թ., 2 երգ (9ա—բ):

ԴԱԼԼԱԳ-ՄՈՒՐԱԴ. Եղել է Երևանի գավառի Դավալու գյուղացի. այլ բան նրա մասին հայտնի չէ. 3 երգ (10ա—11ա):

ԴԱՐԳՅԱՀԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (11բ):

ԶԱՀՐԻ. Իսկական անունը Կարապետ. ծնվել է Վանի շրջ. Կեմ գյուղում 1818 թ., մեռել է Ալեքսանդրապոլում 1888 թ., 1 երգ (12ա):

ԶԱԼԱԼԱԹ. Եղել է Էրզրումցի, այլ բան հայտնի չէ. 1 երգ (12բ):

ԶԱՎՂԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (13ա):

ԶԱՔԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (13բ):

ԶԱՐԳՅԱՐ. Իսկական անունը Աբրահամ. ծնվել է Շամախում 1824 թ., տեղափոխվել է Բաքու 1868 թ., ուր պարապել է ոսկերչությամբ. այլ բան հայտնի չէ. 1 երգ [տպ. Գ. քահ. Գրիգորյան. «Զարգյարի քնարը»] (14ա):

ԶԱԼԱԼ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (14 բ):

ԶՈՒԲԵՅԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 4 երգ (15ա—բ):

ԷՅԼԱԶ. Պարսկաստանի Սալմաստ գավառից է եղել. այլ բան հայտնի չէ, 1 երգ (16ա):

ԹԻՖԻԼ-ՂԱԶԱՐ. Եղել է Երևանի գավառի Կոտայքի շրջ. Գյամրեզ գյուղացի. մեռել է 1730 թվականներին. այլ բան հայտնի չէ. 7 երգ (16բ—19ա):

ԹՈՒԶԱՐ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (19բ):

ԹՈՒՐԻՆՋ. Իսկական անունը Թորոս. ծնվել է Շամախու գավառի Քարհանչ գյուղում 1790 թ. մեռել է 1845 թ., 1 երգ (20ա):

ԹԱԹՈՍ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (20բ):

ԻՎԱՆ. Եղել է Թիֆլիսեցի. այլ բան հայտնի չէ. 1 երգ [տպ. «Սոխակ» Դ] (21ա):

ԽԱՅԱԼԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (21բ):

ԽՈՅԼԻ-ՎԱՐԴԱՆ. Եղել է Պարսկաստանի Խոյ գավառից. այլ բան հայտնի չէ. 1 երգ (22ա):

ԽՈՒՄԱՐ-ՕՂԼԻ. Իսկական անունը Օհաննես (Օհան). եղել է Երևանի գավառի Իմանշալլու գյուղացի. այլ բան հայտնի չէ. 2 երգ (22բ—23ա):

ՀԱՐԹԻՆ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (23բ):

ՀԱՐԹԻՆ-ՕՂԼԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (24ա):

ՀԻԶԱԲԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 2 երգ (24բ—25ա):

ՂԱԶԱՐ. Եղել է Մշեցի. այլ բան հայտնի չէ. 1 երգ (25բ):

ՂԱԶԱԶ-ՕՂԼԱՆ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (26ա):

ՂԱՍԱԲ-ՕՂԼԻ. Իսկական անունը Ալեքսան. եղել է Հին-Բայազետցի. այլ բան հայտնի չէ. 2 երգ (26բ):

ՂՈՒԼ-ՄԱՆՈՒԿ. Տաճկաստանի Արծափի շրջանից է եղել. այլ բան հայտնի չէ. 1 երգ (27ա):

ՂՈՒԼ-ՀՈՒՆԱՆ. Ծնվել է Դարալագյազի շրջ. Չանախչի գյուղում 1730 թ. այլ բան հայտնի չէ. 1 երգ (27բ):

ՄԱԴԱԹ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (28ա):

ՄԱՀՋՈՒԲԻ. Իսկական անունը Բաղալ. ծնվել է Սուրմալվի շրջ. Կողբ գյուղում 1865 թ. այլ բան հայտնի չէ. 1 երգ (28բ)։

ՄԱՐԴԻ-ՋԱՄԱՆ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (29ա)։

ՄԱՂՋՈՒՄ. Եղել է Երևանի գավառի Հրազդան շրջանի Թավադյուղացի, մեռել է 1880 թ. այլ բան հայտնի չէ. 2 երգ (29բ—30ա)։

ՄԱՅԻՑ. Իսկական անունը Հարություն. ծնվել է Պարսկաստանի Թեհրան գավառի Ղարախան գյուղում 1825 թ. հետո գաղթել է Լյանքարան, Շամախի, հետո Բաքու. մեռել է 1901 թ. կույր է եղել. 1 երգ (30բ)։

ՄԻՆԱՍ-ՕՂԼԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (31ա)։

ՄԻՍԿԻՆ-ԲՈՒՐՋԻ. Ծնվել է Գանջայում 1810 թ. այլ բան հայտնի չէ. 2 երգ [սրանցից մեկը տպ. «Հայ քնար»] (31բ—32ա)։

ՄՈՒՍԵՍ-ՕՂԼԻ. Անունը Վարդան. ծնվել է Երևանի գավառի Ղամարլվի շրջանի Թափարաշ գյուղում 1825 թ. մեռել է 1889 թ., 2 երգ (32բ—33ա)։

ՅԱՂՈՒԲ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (33բ)։

ՅԱՂՈՒԲ-ՕՂԼԻ. Իսկական անունը Կարապետ. եղել է Ալեքսանդրապոլի շրջանի Ղշլաղ գյուղացի, մեռել է 1847 թ. այլ բան հայտնի չէ. 3 երգ (34ա—բ)։

ՅԵԴԳԱՐ. Եղել է Երևանի գավառի, Ղամարլվի շրջանի գյուղերից. այլ բան հայտնի չէ. 1 երգ (35ա)։

ՆԱՐԻՆՋ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (35բ)։

ՆԱՂՇՔՅԱՐ-ՍԱՐԳԻՍ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (36ա)։

ՆԱԼԲԱՆԴ-ՕՂԼԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (36բ)։

ՇԻՐՄԱՋ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (37ա)։

ՇԻՐՎԱՆԼԻ-ԵԹԻՄ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (37բ)։

ՇՀԱԴԴԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (38ա)։

ՇՈՎՇԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (38բ)։

ՇԻՐԻՆ. Իսկական անունը Հովհաննես. ծնվել է Սուրմալուի գավառի Կողբ գյուղում 1827 թ. կույր է եղել. մեռել է Վաղարշապատում 1884 թ. այլ բան հայտնի չէ. 5 երգ (39ա—40ա)։

ՉՐԱՂԻ. Իսկական անունը Մարտիրոս, եղել է Դարաչիչագի շրջանի Շահրեզ գյուղացի. այլ բան հայտնի չէ. 6 երգ (40բ—43ա)։

ՉՐԱՂ-ՕՂԼԱՆ. Եղել է Թիֆլիսեցի. այլ բան հայտնի չէ. 1 երգ (43բ)։

ՉԻԲԱՂՉԻ-ՕՂԼԻ. Իսկական անունը Առաքել. այլ բան հայտնի չէ. 1 երգ (44ա)։

ՉԱՆԱՂՉԻ-ՕՂԼԻ. Իսկական անունը Իսրայել. Կոտայքի շրջանի գյուղերից է եղել. այլ բան հայտնի չէ. 1 երգ (44բ)։

ՋԱՀՏԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (45ա)։

ՋԱՄԱԼԻ. Իսկական անունը Մկրտիչ. ծնվել է Ալեքսանդրապոլում 1848 թ. 1 երգ (45բ)։

ՋՈՒԴԴԱՅԻ. Իսկական անունը Դավիթ, եղել է Թիֆլիսեցի. այլ բան հայտնի չէ. 1 երգ (46բ)։

ՋԵՅՀՈՒՆԻ. Եղել է Ալեքսանդրապոլի շրջանի Մեծ-Քյափանագ գյուղացի. կույր է եղել. այլ բան հայտնի չէ. 1 երգ (47ա)։

ՌՈՒՍՏԱՄ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (47բ)։

ՍԱՅԱԹ-ՆՈՎԱ. Իսկական անունը Հարություն. ծնվել է Թիֆլիսում 1719 թ. սկզբում, պարապել է ջուլհակությամբ. երգել է նախ վրացերեն, թուրքերեն, ապա շատ հետո՝ հայերեն. հայտնի է որ 17 տարի պարապել է

աշուղությամբ. ծերության օրերում քաշվել է Հաղպատի վանքը և դառել է վարդապետ. 3 երգ (48ա—49բ):

ՍԱՂԱՅԻ. Իսկական անունը Աղաջան. ծնվել է Նոր Բայազետի շրջ. Ղշլաղ գյուղում 1848 թ. մեռել է 1916 թ., 1 երգ (49բ):

ՍԱԼՄԱՍՏԼԻ-ՂՈՒԼ-ՀԱՐՈՒԹՅՈՒՆ. Պարսկաստանի Սալմաստի շրջանի Սավրա գյուղացի է եղել. ծնվել է 1700 թվականներին. ամենանշանավոր աշուղներից մեկն է եղել. ասել է մեծ մասամբ թուրքերեն և կրոնական բովանդակություն ունեցող երգեր. մահվան թվականը հայտնի չէ, բայց հետագայում աշուղների կողմից ճանաչվել է որպես Փիր (սուրբ), աշուղ վարպետ, և նրա գերեզմանը դառել է աշուղների համար ուխտատեղի. 6 երգ (50ա—52բ):

ՍԱՆԱՄ-ՆՈՎԱ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (53ա):

ՍԱՐԴԱՐ-ՕՂԼԻ. Անունը Ավետիս. ծնվել է Երևանի գավառի Ղամարլվի շրջ. Չիդդամլու գյուղում. այլ բան հայտնի չէ. 2 երգ (53բ—55ա):

ՍԱՀԱԿ. Եղել է Սուրմալվի գավառի Խալֆալու գյուղից. այլ բան հայտնի չէ. 1 երգ (55բ):

ՍԵՅՐԱՆ. Թիֆլիսեցի է եղել. այլ բան հայտնի չէ. 1 երգ (56ա):

ՍԵՖԻԼ. Իսկական անունը Ստեփան. եղել է Երևանի գավառի Աղաստավան գյուղացի. կույր է եղել. այլ բան հայտնի չէ. 1 երգ (56բ):

ՎԱՂՈՒԲ. Կենսագրությունը հայտնի չէ. 7 երգ (57ա—60ա):

ՎԱՆԼԻ-ՔՅՈՉԱԿ. Կոչվել է նաև «Վանլի-չիչագ». Վանեցի է եղել. այլ բան հայտնի չէ. 1 երգ (60բ):

ՈՍԿԱՆ-ՕՂԼԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (61ա):

ՎԵՐԴԻ. (Նույն ինքը՝ Գեղամ Թարվերդյան). Ծնվել է Երևանի գավառի Ղամարլվի շրջ. Աղաստավան գյուղում 1884 թ., 1 երգ (61բ):

ՔՅԱՄԱԼԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (62ա):

ՔԻՉԻԿ-ՆՈՎԱ. Կենսագրությունը հայտնի չէ. 1 երգ (62բ):

ՔԵՇԻՇ-ՕՂԼԻ—ՄԿՐՏԻՉ. Եղել է Թիֆլիսեցի. կույր է եղել. երգել է մեծ մասամբ թուրքերեն. ամենանշանավոր աշուղներից մեկն է եղել. այլ բան հայտնի չէ. 11 երգ (63ա—68ա):

ՔԵՇԻՇ-ՕՂԼԻ—ՄԵԼՔՈՆ. Ծնվել է Մշո շրջանի Ծփնա գյուղում, 1880 թ. հետագաղթել է Ռուսաստան. այլ բան հայտնի չէ. 1 երգ (68բ):

ՔԵՇԻՇ-ՕՂԼԻ—ՄԻՆԱՍ. Եղել է Երևանի գավառի Կոտայքի շրջ. Շահառ գյուղացի. այլ բան հայտնի չէ. 3 երգ (69ա—70ա):

ՔՅՈՒՐԴ-ՕՂԼԻ. Անունը Վասակ. եղել է Երևանի գավառի Դարաչիչագի շրջ. Քարվանսարա գյուղացի, այլ բան հայտնի չէ. 1 երգ (70բ):

ՈՒԶՈՒՆ-ՕՂԼԱՆ. Անունը Տրդատ. եղել է Գանձակի կողմերից. այլ բան հայտնի չէ. 1 երգ (71ա):

ՈՒՌՖԱՆԻ. Կենսագրությունը հայտնի չէ. 2 երգ (71բ—72ա):

ՕՀԱՆ-ՕՂԼԻ. Անունը Իսրայել ծնվել է Երևանի գավառի Կոտայքի շրջ. Թեջրաբակ գյուղում 1851 թ., մեռել է 1912 թ., 1 երգ (72բ):

ՖԻՔՐԻ. Իսկական անունը Օհաննես. ծնվել է Երևանի գավառի Կոտայքի շրջ. Գյամրեզ գյուղում 1827 թ., մեռել է 1907 թ., 1 երգ (73ա):

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԱԽՏԱԿ

## ՎՐԱՍՏԱՆԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԱՐԽԻՎԻ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ

| № | Նյութ | Մեծություն | Գիր | Ժամանակ | Գրիչ | Տեղ | Պատվիրատու (ստացող) | Բովանդակություն |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1/540 | հին թուղթ | 43×28×9 | բոլորագիր | մինչ 1771 | Պողոս քահանա | անհայտ | Խոջա Ալավերդի | Ցայսմաւուրք |
| 2/541 | » | 18,5×14×5,5 | » | 1471 | անհայտ | Հավուց Թառ | անհայտ | Աւետարան |
| 3/542 | թուղթ | 25×17,5×2 | » | անորոշ | » | անհայտ | » | Աւետարան Ղուկասու (Թերի) և Յովհաննու |
| 4/543 | հին թուղթ | 16×12,5×3 | » | » | » | » | Մանուէլ վրդ. (՞) | Մաշտոց |
| 5/544 | մագաղաթ | 24×17×6 | » | 1474 | » | Կիւրդի վանք | Սահակ երէց Խուռնավիլու | Աւետարան |
| 6/545 | հին թուղթ | 18,5×13,5×5 | » | 1511 | Յոհաննես | Սուրբ Մաշտոց, «մերձ առ գեղաքաղաքիս Սոթայ» | Մանուէլ քահանա | » |
| 7/546 | » | 21×16×6 | » | 1485 | Խաչատուր աբեղա (ծաղկազարդող տէր-Արիստակէս) | Սանահին | Բեկխիթան | » |
| 8/547 | թուղթ | 15,5×10,5×1 | նոտրագիր | անորոշ (17-րդ դ.) | անհայտ | Կարինի մոտ | անհայտ | Պարզատոմար |
| 9/548 | » | 29×22×0,5 | բոլորագիր | անորոշ (17-րդ դ.) | » | անհայտ | » | Խորհրդատետր պատարագի |
| 10/549 | » | 17,5×13×4,5 | նոտրագիր | 1714 | Կիրակոս | » | Անտոն | Ցիշատակարան տպագիր աւետարանին կցված |
| 11/550 | » | 21×14,5×4 | բոլորագիր | 1481 | Խաչատուր երէց | Ճիխել գյուղ | Անտոն կրոնաւոր՝ «հայր վանուց Ջօղքու Աստվածածնին» | Գանձարան |
| 12/551 | » | 19×13,5×1 | » | 1510 | անհայտ | «Գաւզս Ցարայմիշի, որ կոչի Ցարբիկ» | Պարսեղ երէց | Մաշտոց |

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 13/552 | » | 21×16×1 | Նոտրագիր | անորոշ | » | անհայտ | Ղարանցի Պառքարի որդի Սահակ | Հեքիմարան |
| 14/553 | մագաղաթ | 26×18 | երկաթագիր | (10–11-րդ դդ.) | » | » | անհայտ | Պատառիկ ընթերցվածք |
| 15/554 | թուղթ | 47,5×8 | բոլորագիր | անորոշ | » | » | » | Հմայիլ (պատառիկ) |
| 16/555 | » | 15,5×10,5×1,5 | » | անորոշ (16–17-րդ դդ.) | » | » | Ամիրբեկ, Միրզաբեկ և նրանց մայր Փարասը | Ուրբաթագիրք |
| 17/556 | հին թուղթ | 33×23 | » | անորոշ | Յոհաննէս | » | Մերուն քահանա | Յայսմաւուրք (պատառիկ) |
| 18/557ա | թուղթ | 225×7,5 | բոլորագիր և նոտրագիր | 1774 | Յակոբ | » | անհայտ | Հմայիլ (պատառիկ) |
| 19/557բ | » | 88×8,5 | բոլորագիր | անորոշ (18-րդ դ.) | անհայտ | » | » | » |
| 20/557գ | » | 29×8 | » | անորոշ | » | » | Միրզի (՞) | » |
| 21/557դ | » | 165×7,5<br>80×7,5<br>170×7,5 | » | » | » | » | Միրզի (՞) | » |
| 22/558ա | » | 34,5×26 | » | » | » | » | Գարոն Աբրահամ ընտանեօք | Ճառընտիր (պատառիկ) |
| 23/558բ | » | պատառոտած | » | անորոշ (14–15-րդ դդ.) | » | » | անհայտ | Ավետարան Ղուկասու (պատառիկ) |
| 24/558գ | » | 30×20 | երկաթագիր | անորոշ | » | » | » | Ավետարան Մատթէոսի (ԻԴ, 16—21) |
| 25/558դ | կապույտ թուղթ | 16×11 | Նոտրագիր | 1503 (պատճենագրման) | Ազարեկ Ռուբենեան Սյունյաց իշխան | Նորավանք | » | Յիշատակարան ավետարանի |
| 26/581 | թուղթ | 13,5×9,5×1,5 | » | 1847 | Յակոբ դպիր | Լիմ անապատ | Թադէոս վրդ. | Գիրք աղօթից (ընդօրինակ.) |
| 27/582 | » | 30×10<br>24×10,5<br>20,5×10,1 | Նոտրագիր և վրացերեն «մխեդրուլի» | անորոշ (18-րդ դ.) | անհայտ | անհայտ | անհայտ | Մասունք աստուածաշնչի |
| 28/583 | հին թուղթ | 21×14,7×3 | բոլորագիր | 1606-ից առաջ | » | » | » | Աղեքսանդր Մակեդոնացու պատմությունը |
| 29/584 | մագաղաթ | 13,5×10,5×6 | » | 1328 | Մկրտիչ քահանա | Կիլիկիա՝ «ի Թագս Դուգուչի» | Յովհաննէս եպիսկոպոս | Ավետարան |

| № | Նյութ | Մեծություն | Գիր | Ժամանակ | Գրիչ | Տեղ | Պատվիրատու (ստացող) | Բովանդակություն |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 30/587 | տարբեր որակի թուղթ | 22×15×1,5 | նոտրագիր և վրացերեն «մխեդրուլի» | 18-րդ դ. (սկսած 1762 թ.) և 19-րդ դ. (մինչև 1851 թ.) | մկրտող քահանաներ | Ախալցխի (հայկաթոլիկ և վրացկաթոլիկ համայնք) | — | Մատյան մկրտության հայ և վրաց կաթոլիկների |
| 31/588 | թուղթ սպիտակ և կապույտ | 21,5×16×0,5 | նոտրագիր | անորոշ (18-րդ դ.) | անհայտ | անհայտ | անհայտ | Տոնացույց հայ կաթոլիկաց |
| 32/589 | թուղթ | 16×10,3×2,5 | » | 1823 | » | Ախալցխե | » | Մաշտոց հայ կաթոլիկաց |
| 33/590 | » | 15×10×10,5 | » | 1698 | Ավետիք | անհայտ | «Շուշան գեղեցիկ պատմական թագուհի» | Տաղարան |
| 34/622 | » | 21×17×3,5 | նոտրագիր և վրացերեն «մխեդրուլի» | 1899 | տիրացու Պողոս Թաթևնով, հետագայում Պողոս քահ. Թումաշվիլի | «ի գիւղ Ուտէ» Ախալցխեի մոտ | Ցենզուրական կոմիտեին ներկայացնելու համար | Հայ-վրացերեն բառարան (ըստ Մխիթար Սեբաստացու գրաբարի քերականության ցանկի) |
| 35/627 | » | 16,5×11×2,5 | » | 18-րդ դ. | անհայտ | անհայտ | անհայտ | » |
| 36/633 | » | 17×12,5×1,5 | նոտրագիր | անորոշ | » | » | » | Ժողովածու (Գործք առաքելոց և Գրիգոր Տաթևացի) |
| 37/634 | » | 16,5×11×1 | » | անորոշ (18-րդ դ.) | » | » | » | Գանձարան |
| 38/635 | » | 17,5×11×0,2 | » | 1840 | Յովանջան Նիգաշով(՞) | » | » | Շարակնոց և ավետարան (թերի) |
| 39/636 | » | 18×13×1,5 | նոտրագիր և վրացերեն «մխեդրուլի» | անորոշ (18-րդ դ.) | անհայտ | » | » | Մաշտոց կամ ծիսարան հայ և վրաց կաթոլիկների |

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 40/639 | » | 21,5×17,5×1,5 | » | 18-րդ դ. | » | » | » | Հայ-վրացերեն բառարան (հմմ. №№ 34/622 և 35/627) |
| 41/640 | » | 21×15,5×4 | Նոտրագիր | 1749 | Վարդան դպիր | Կ. Պոլիս՝ Պեկօղլու թաղ | Եղիա վրդ. | Գանձ վարդապետութեան Քրիստոսի (կաթոլիկական) |
| 42/641 | » | 24×17,5×0,5 | բոլորագիր | անորոշ | անհայտ | անհայտ | անհայտ | Քարոզգիրք |
| 43/642 | » | 19×14×1 | Նոտրագիր | 1768 | Տիրան | Ս. Կարապետ Կեսարու | » | Վիճաբանություն (կաթոլիկական) |
| 44/675 | հին թուղթ | 26×17,5×11 | բոլորագիր | անորոշ (14—15-րդ դդ.) | անհայտ | անհայտ | » | Գանձարան |
| 45/676 | թուղթ | 10×7,5×3,5 | » | անորոշ | » | » | » | Տոնացույց |
| 46/677 | » | 16×10×1 | Նոտրագիր | 18-րդ դ. | Մանես | » | » | Աղոթագիրք |
| 47/678 | » | 15×9,5×1,5 | բոլորագիր | 1840 | Մովսէս մահտեսի | Շուշի (Ղարաբաղ) | » | Ժողովածու (Պատմութիւն Պղնձէ քաղաքին եւն.) |
| 48/700 | » | 22×16,5×2,5 | Նոտրագիր | 1790 | անհայտ | Ն. Նախիջևան | Յովսէփ արքեպս. Արղութեան | Աղօթամատոյց (Գանձարան-Չրատարան) |
| 49/705 | » | 37×22,5×2 | » | 1814 | Գէորգ Մելքիսեդեկեան Թուրով, եղբօրորդի Սիմէոն կաթողիկոսի | Մոզդոկ, թե՞ Ղզլար | Եփրեմ կաթողիկոս | Գաւազանագիրք |
| 50/715 | նոր թուղթ վանդակավոր գծագրութեամբ | 21×14,5×1 | » | 1921—1940 (Աբեղյանական ուղղագրությամբ) | Գ[եղամ] Թ[արվերդյան] | Երևան | — | Թուրքերեն ասող հայ աշուղներ |